# ԼԵՌՆԱՅԻՆ ԳՅՈՒՂՈՒՄ

ՎԱՀԱՆ ՄԱՂԱԼՅԱՆ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

Մայրամուտի հետ մենք մի գյուղ մտանք՝
Վարժանքից հետո, հոգնած ու ծարավ,
Մի փոքրիկ տղա, աչքերն կապուտակ,
Մեզ դեպի գյուղի աղբյուրը տարավ:

Մենք ջուր խմեցինք ու ընկանք ճամփա,
Մեր զինվորական շարքերով ուղիղ,
Ու հեռու-հեռվում կանգնեցինք մի պահ՝
Հրաժեշտ տալու այն կանաչ գյուղին:

Արդեն երեկոն իջնում էր խաղաղ,
Արևն իր վերջին շողերն էր մարում,
Բայց մեր ետևից այն փոքրիկ տղան
Իրեն մոռացած դեռ մեզ էր նայում:

Գիտեմ, ուզում էր նա զինվոր լինել
Ու մեզ հետ քայլել մեր կռվի դաշտում,
Չէ՞ որ ես էլ եմ նույնը երազել,
Զինվոր տեսնելիս, նրա հասակում:



# Յաղթանակի երկնքի տակ

Վ. ԴԱՎԻԴՈՎԻՉ

Մեծ Հայրենականի վերջին գարունն էր: Արևելյան Պրուսիայում համառ մարտեր էին մղում 20-րդ դիվիզիայի գումարտակները, նպատակ ունենալով հասնել Քյոնիգսբերգից հարավ-արևմուտք գտնվող Ֆրիշ Գաֆ ծովախորշը: Մանր գրոհները հաջորդում էին իրար, և վերջապես թշնամին չդիմացավ՝ նահանջեց: Մարտի 27-ին արդեն մեր զինվորները կոշիկները լվանում էին ծովի ջրով: Գումարտակներից մեկի շտաբի պետ, կապիտան Գրիգոր Նազարյանը նայում էր ծովին, որը տարածվել էր մինչև անընդգրկելի հեռուները, գորշ կանաչավուն գույն ուներ և ամայի էր: Քսանյոթամյա կապիտանը փորձառու սպա էր: Նա պատերազմ էր մեկնել ճարտարապետական ինստիտուտի երրորդ կուրսից: Ավարտելով հետևակային ուսումնարանը, Նազարյանը մարտնչել էր Ստալինգրադում, մասնակցել Կուբանի, Բելոռուսիայի և լեհական քաղաքների ազատագրմանը:

Շարժիչների աղմուկը Գրիգոր Նազարյանին ստիպեց վեր նայել: Ծովի ուղղությամբ թռչում էին կարմիր աստղերով երկու ինքնաթիռ: Նայելով նրանց, Նազարյանը հիշեց, թե ինչ պատահեց առավոտյան, երբ գումարտակը գրոհի էր պատրաստվում: Ծովի վրա օդային մարտ տեղի ունեցավ: Մեր ինքնաթիռները փախուստի մատնեցին հակառակորդին, բայց վերջին պահին բոցավառվեց ՅԱԿ-երից մեկը և օդաչուն պարաշյուտով վայրէջք կատարեց ծովում, ափից երկու-երեք կիլոմետր հեռու: Օդաչուի մասին միտքը հանգիստ չէր տալիս Նազարյանին: Հեռադիտակով նորից ու նորից ստուգելով ջրերը, բացի գերաններից, տախտակներից ու տակառներից, նա ոչինչ չէր տեսնում:

Օրն արագ անցավ: Հարևան գումարտակը ոչ մի կերպ չէր կարողանում ընկճել թշնամուն և պետք էր օգնության հասնել: Երեկոյան դեմ մարտը հաջողությամբ ավարտվեց: Գրիգոր Նազարյանը գնաց ափի պաշտպանությունը ստուգելու: Սառը քամիներից մրսող զինվորները թաքստարաններում կրակ վառելու թույլտվություն խնդրեցին: Հանկարծ ծովից մարդու ճիչ լսվեց: Մի՞թե թվաց:

Նազարյանը մոտեցավ ափին. ջուրը այրող սառն էր: Ծովախորշը երկու շաբաթ առաջ էր ազատվել սառույցներից: Նորից լսվեց նույն ճիչը, և արդեն հստակ էր օգնության կանչը:

— Նավա՛կ բերեք,— հրամայեց Նազարյանը: Նա իսկույն մտածեց օդաչուի մասին, բայց հեռու վանեց այդ միտքը. մի՞թե այդպիսի ջրում հնարավոր է քսան ժամ դիմանալ:

Զինվորները նավակ բերեցին, բայց թիակներ չկային: Նազարյանը սկսեց թիավարել տախտակի մի կտորով: Երկինք թռավ և ջուրը լուսավորեց գումարտակի հրամանատարի տեղակալ Ա. Շուբենկոյի արձակած հրթիռը: Անմիջապես հիտլերականների դիրքերից ճարճատյունով վեր թռան բազմաթիվ հրթիռներ, կրակել սկսեցին գնդացիրները: Գնդակները կտցահարում էին ջուրը, մի քանիսը դիպան նավակին: Մեր գումարտակի գնդացիրները ևս կրակ բացեցին՝ շեղելով հակառակորդի ուշադրությունը:

Ուշադիր չորս կողմ նայելով՝ Նազարյանը շարունակում էր թիավարել: Նավակը ավելի ու ավելի էր ջրով լցվում: Երևի այն շատ էր ծակծկվել: Նազարյանը նավակի հետ դանդաղ սուզվեց ջրի մեջ: Այդ պահին էլ, երբ աչքերը հարմարվել էին ջրին, նա մի քանի մետր հեռավորության վրա տեսավ գերանին կառչած ձեռքեր: Շրջանցելով գերանը, Նազարյանը տեսավ օդաչուական սաղավարտով մարտիկին: Նրա աչքերը փակ էին, բայց ձեռքերը ամուր կառչել էին փրկության միակ հույսին: Մի ձեռքով գրկելով օդաչուին, մյուսով՝ գերանը, Նազարյանը լողաց դեպի ափ: Սև ծովի ափին մեծանալով, նա լավ լողալ գիտեր, բայց այստեղ սառը ջուրը կաշկանդում էր մարմինը: Երբ մինչև ափ երկու հարյուր մետր էր մնացել, զգաց, որ ուժերը լքում են: Արդեն լռել էր մարտը, և Նազարյանը կորցնելով կողմնորոշումը՝ լողում էր պատահական ուղղությամբ: Հանկարծ ձախ կողմում փայլեց խարույկի բոցը: Նա կարծես նոր ուժ ստանալով՝ ավելի արագ լողաց... Նազարյանը չէր հիշում, թե ինչպես տեղ հասավ: Ուշքի եկավ, երբ ոտքերը դիպան ավազին: Օգնության հասած զինվորները օդաչուին ափ հանեցին: Հետո նրանք ծանո-

# ՁՅԱՆ ՓԱԹԻԼՆԵՐԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Մրսած են ձյան փաթիլներն ասես,
Դողում, թրթռում, իջնում ակամա...
Մեռած, հողմածեծ ծաղիկների պես
Գուցե արև են երազում հիմա:
Առվակ են տենչում ուրախ գլգլացող,
Ամռան առավո՞տ, արտույտնե՞ր կանաչ,
Երբ իրենք իբրև մի-մի կաթիլ ցող,
Ծաղկի շուրթին էին համբուրում կամաց...
...Եվ ափսոսանքով կարծես ասում են.
— Եկե՞ք միանանք...
— Եկե՞ք տաքանանք...—
Իրար գրկելով մեղմ փսփսում են
Ու երկիրն առնում հաստ վերմակի տակ:
..Իրենք դողում են, իրենք մրսում են,
Բայց կորիզը հողի միշտ պահում են տաք...

*Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

թացան: Պարզվեց, որ օդաչուն «Նորմանդիա-Նեման» նշանավոր ավիագնդից է, ֆրանսիացի Ֆրանսուա դը Ժոֆրը: Նա խնդրեց Նազարյանին գրել հասցեն, ազգանունը, կոչումը:

— Մենք դեռ կհանդիպե՞նք,— բացականչեց ֆրանսիացին, և նրանք գրկախառնվեցին:

Սակայն հանդիպումը բավականին ուշ տեղի ունեցավ: Ֆրանսուա դը Ժոֆրի վերադարձից հետո, ավիագնդի հրամանատար Լուի Դելֆինոն հրամայեց գտնել սովետական կապիտան Գրիգոր Նազարյանին, որպեսզի նրան հանձնի ֆրանսիական մարտական «Ռազմական խաչ» շքանշանը: Նազարյանին չգտան. նա արդեն Արևելյան Պրուսիայում չէր: Դիվիզիան շարժվել էր Բեռլինի ուղղությամբ: Գրիգոր Նազարյանը չգիտեր, որ Ֆրանսուա դը Ժոֆրը երկար ժամանակ իրեն է փնտրում: Հետո Իլյա Էրենբուրգի գրքերից մեկում Նազարյանը կարդաց, թե ինչպես է սովետական կապիտանը փրկել ֆրանսիացի օդաչուին, բայց համեստությունը թույլ չտվեց ասելու, որ դա ինքն է եղել:

Պատերազմից հետո Գրիգոր Նազարյանը ավարտեց ճարտարապետական ինստիտուտը, աշխատեց Ֆրունզե քաղաքում, հետո տեղափոխվեց Սոչի, ուր ղեկավարեց ճարտարապետական արվեստանոցներից մեկը: 1965 թվին Ֆրանսուա դը Ժոֆրը երեք օր եղավ Սոչիում: Նրանք կարող էին հանդիպել, բայց իրար մասին ոչինչ չգիտեին: Միայն հաղթանակից քսանչորս տարի անց, Նոր տարվա նախօրյակին, տեղի ունեցավ հանդիպումը: Այդ ժամանակ էլ Նազարյանին հանձնվեց ֆրանսիական շքանշանը: Միաժամանակ, «Նորմանդիա-Նեման» ավիագնդի վետերանների խորհրդի հրամանով նրանց հանձնվեց պատվո հուշանշան, որով պարգևատրվում են միայն այդ ավիագնդում ծառայած օդաչուները:

...Մենք Գրիգոր Նազարյանի հետ քայլում ենք Սոչիի փողոցներով: Նա ցույց է տալիս փոստի շենքը, Վարդերի փողոցում գտնվող 240 բնակարանանոց շենքը և այլ շինություններ, որոնք կառուցվել են իր նախագծով: Մարտիկ և շինարար: Եվ շինարար Գրիգոր Նազարյանը նույնպես եռանդուն ու անխոնջ է, ինչպես երեք տասնամյակ առաջ:

*Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ*



# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ



# ՍԿԻԶԲԸ

*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Մեծամոր քաղաքի տեղում, որտեղ հայկական ատոմային էլեկտրակայանն է գտնվում, հազարամյակներ առաջ գոյություն ուներ մի ոչ մեծ ավան: Անհիշելի այդ ժամանակներում, երբ հավերժական քաղաք Հռոմի ու հնադարյան Էրեբունու հիմքերն անգամ չէին դրվել, այս ավանում գործում էր աշխարհի հնագույն մետաղաձուլարաններից մեկը, որտեղ պատրաստված մետաղե գործիքներ, զարդեր ու զենքեր էին ձուլում մեր նախապապերի նախապապերը...

Ամեն առավոտ, երբ Արեգակը ելնում էր հեռավոր լեռների թիկունքից ու սկսում ջերմացնել աշխարհը, մետաղագործ վարպետները պաշտամունքի ծեսով էին դիմավորում նրան: Ծնկաչոք ու ներշնչված, դեպի արևը նայելով, նրանք Արև-աստծուն խնդրում էին վառ պահել իրենց հնոցի կրակը՝ դրա դիմաց այրվող կոճեր խոստանալով:

— Ո՛ւժ տուր կրակին, Արեգա՛կ աստված,— խնդրում էր ծեր վարպետ Արիգին, որը վարպետներից հմտագույնն էր և ամենքի ուսուցիչը:— Քո ջերմությունից բաժի՛ն հանիր քարին և անջատի՛ր ազնիվ մետաղը հողից...

— Ո՛ւժ տուր կրակին, Արեգա՛կ աստված...— կիսաձայն կրկնում էին մյուս վարպետները՝ հայացքները հառելով Արեգակի կուրացնելու աստիճան պայծառ սկավառակին:

Ապա նրանք բարձրաձայն երգում էին ցերեկային լուսատուի հիմնը, որից հետո միայն սկսում աշխատանքը:

Առավոտյան ծեսերին ոտքի վրա էին լինում ավանի բոլոր բնակիչները՝ դեռ չքայլող երեխաներից մինչև խորին ծերերը: Սակայն վարպետներից բացի, ուրիշ ոչ մեկը իրավունք չուներ և չէր էլ համարձակվում խոսել Արեգակի հետ: Նրանք մի քիչ հեռվում կանգնած, հայացքներում հետաքրքրասիրություն, վախ և ակնածանք, նայում էին աղոթողներին:

Այդ խմբի առաջին շարքում, աչքերը զարմանքից լայն բացած, վարպետներին էր նայում Մարդին վարպետի տասնմեկամյա որդին՝ խաժակն Ռուշուան: Մերթ ընդ մերթ նա հայացքը կտրում էր մետաղագործներից և, աչքերը փոքրինչ կկոցելով, փորձում հասկանալ, թե ինչպես է արևը պատասխանում ծեր Արիգիին: Պատանու հետաքրքրասիրությունները սահման չունեին:

Հաճախ էր նայում նա կավածեփ ամանից դուրս հոսող հալված մետաղին, որը կուրացուցիչ փայլում էր Արեգակի նման: Հրահեղուկ զանգվածը լցվում էր կավե կաղապարների մեջ, և մետաղի հարթ մակերևույթն ավելի էր նմանվում արևին:

— Ինչո՞ւ է մետաղը հալված ժամանակ նմանվում արևին,— հարցրեց մի օր Ռուշուան:

— Դա Արեգակն է իր կերպարանքով հայտնվում մետաղի մեջ, որպեսզի ամրություն տա նրան,— պատասխանեց ծեր վարպետ Արիգին:

— Բայց Արեգակն այս պահին երկնքում է,— զարմացավ տղան: — Ինչպե՞ս կարող է նա այստեղ լինել:

— Արևը կարող է միաժամանակ լինել ամեն տեղ,— ժպտաց ծեր Արիգին:— Ե՛վ երկնքում, և՛ մետաղի մեջ, և՛ քո աչքերում...

Ամենախելոք մարդն էր վարպետ Արիգին, բայց նրա պատասխանը չբավարարեց տղային: Երկար մտածելուց հետո նա որոշեց. «Եթե չկա մեկը, որ կարողանա ամեն ինչ բացատրել ինձ, ես ինքս կաշխատեմ հասկանալ»:

Պարզկա երեկոներին նա մինչև ուշ գիշեր նստում էր տան հողածածկ կտուրին ու նայում աստղերին: Եվ հանկարծ երկինքն ասես կենդանանում էր: Նա ջանում էր հասկանալ, թե ինչ են խորհում, ինչ են անում աստղերը այդ պահերին: Հետո կամաց-կամաց սկսեց ուշադրություն դարձնել նրանց շարժումներին: Ահա այդ ժամանակ էր, որ նա կատարեց իր առաջին ամենամեծ հայտնագործությունը: Աստիճանաբար հայտնվելով երեկոյան՝ Արեգակի վերջին շողերի անհետացումից հետո, աստղերն ամեն գիշեր շարժվում էին միևնույն ուղղությամբ՝ ավելի ու ավե-



վի հեռանալով իրենց սկզբնական դիրքերից, մինչև Արևի առաջին ճառագայթներն սկսում էին լուսավորել երկինքը: Ամեն մթնելու հետ նրանք նորից հայտնվում էին համարյա նույն տեղում, ինչ նախորդ երեկոյան:

«Աստղերը գիշերային ճամփորդությունից հետո միշտ վերադառնում են իրենց տեղերը,— վճռեց նա,— ինչպես Արեգակն է ամեն առավոտ ելնում իր պալատից: Միայն թե աստղերը բուերի նման գիշերներն են դուրս գալիս...»

Նա ցանկանում էր այդ մասին խոսել ծեր Արիգիի հետ, սակայն արևի ու հալված մետաղի մասին զրույցը հիշելով, որոշեց առայժմ ոչինչ չասել:

Շատ օրեր, շաբաթներ ու ամիսներ անցան: Ռուշուան այլևս այն փոքրիկ տղան չէր, որ միայն նայել ու պապանձվել գիտեր: Նա դարձել էր մետաղագործ վարպետների ընտանիքի լիիրավ անդամ և իրավունք ստացել մասնակցելու Արեգակի փառաբանման առավոտյան ու երեկոյան ծեսերին: Եվ չնայած նա հիմա համարյա ամբողջ օրն զբաղված էր աշխատանքով՝ մետաղ ձուլելով ու մշակելով, այնուամենայնիվ հավատարիմ էր մնացել մանկության տարիների իր որոշմանը. սեփական ջանքերով հասկանալ այն, ինչ ուրիշները չեն կարողանում բացատրել: Նա հավատացած էր, որ դա կհաջողվի իրեն, հարկավոր է միայն ավելի հաճախ և ուշադիր նայել անբացատրելի թվացող երևույթներին:

— Բոլոր աստղերը, բացի մեկից, գիշերները քայլում են երկնակամարով,— երբ արդեն տասնութ տարեկան էր, ասաց նա ծեր Արիգիին: — Այդ մեկն անշարժ նայում է մյուսներին: Նա բոլորի տերն է...

—Բոլորի տերը Արեգակն է,— մռայլվելով նկատեց ծեր վարպետը:

— Գիշերները երկնքում Արև չի լինում,— պնդեց Ռուշուան:— Ես շատ գիշերներ եմ նայել երկնքին և գիտեմ, թե ինչպես են ապրում աստղերը, և տարվա որ եղանակին աստղերից որը ուր է գնում:

Նա սկսեց հողի վրա փայտի կտորով նկարել աստղերը՝ աշխատելով պահպանել նրանց համեմատական չափերը: Ծեր վարպետը նրա դեմքին էր նայում, ասես նրան բոլորովին չէին հետաքրքրում նկարված աստղերը: Նրա կնճռապատ դեմքից չէր անհետանում մռայլության քողը:

— Ահա՛ այս մեկը,— հայացքը գետնից կտրելով, ասաց Ռուշուան՝ աչքերի խորքում թաքցնելով հպարտության զգացումը: Արիգին նրա նկարած քարտեզի վրա հայացքով գտավ ոչ մի բանով աչքի չընկնող փոքրիկ աստղի պատկերը:— Այս մեկը երբեք չի շարժվում:

Երեկոյան, երբ արդեն բոլոր աստղերը երևում էին, նա նորից գտավ ծեր վարպետին: Վարպետը մեծ քարե սալին նստած խոր մտածում էր:

— Նայի՛ր այն աստղին,— ձեռքը Բևեռային աստղի ուղղությամբ պարզելով՝ ոգևորված ասաց պատանին:— Ես նրա մասին էի պատմում...

— Քիչ ժամանակ է մնացել ինձ այս աշխարհում ապրելու,— մի պահ միայն հայացքը Ռուշուանի ցույց տված կողմն ուղղելով՝ ասաց ծեր Արիգին:— Ես կարծում էի, թե իմ փոխարեն դու մետաղ կձուլես ինձանից հետո: Արեգակի օգնությամբ ու կամքով ես մեր ձուլած մետաղին այնպիսի ամրություն տվեցի, ինչպիսին չունի ուրիշ ոչ մի մետաղ: Եվ Արեգակը բարի էր մեր նկատմամբ:

Ռուշուան պարմացած նայում էր նրան և ոչինչ հասկանալ չէր կարողանում: Նա երբեք չէր մտածել, որ կգա այնպիսի օր, երբ այլևս չի լինի ծեր Արիգին, ծեր վարպետ Արիգին, որին նա մանկուց հիշում էր ճիշտ այնպիսին, ինչպիսին որ կար հիմա: Նա չէր պատկերացնում ավանի կյանքն առանց ամենամեծ ու ամենախելոք վարպետի և տարօրինակ սարսափ էր զգում այդ մասին մտածելու փորձ անելիս: Ոչինչ չհասկանալով, նա անխոս նստեց գետնին՝ ծեր ուսուցչի ոտքերի մոտ:

— Արեգակին դուր չի գա, որ ես ոչ մեկին չեմ թողնում ինձ փոխարինելու,— շարունակեց ծեր վարպետը,— որ այն, ինչ ինքը տվել է ինձ, ես մարդկանց թողնելու փոխարեն կրկին վերադարձնում եմ իրեն: Ես ուզում էի դա քեզ թողնել, որպեսզի դու Արևի պայծառությամբ ուժ տայիր քո ձեռքերին ու մտքին և անեիր այն, ինչ ես չեմ արել...

— Բայց ես անում եմ ամենը, ինչ որ դու ես ասում,— ցածրաձայն ասաց Ռուշուան:— Ես ջանում եմ ամեն ինչ անել այնպես, որպեսզի դու գոհ մնաս: Եվ մինչև հիմա դու ոչ մի անգամ չես դժգոհել իմ աշխատանքից:

— Ճիշտ է, Ռուշո՛ւա, որդի՛, ես միշտ գոհ եմ եղել քո արած գործից,— ժպտաց ծեր վարպետը:— Դու արել ես իմ ասած ամեն ինչը: Սակայն արել ես միայն իմ ասածը և ոչ ավելին: Եվ դրանք քո ձեռքերն են արել, իսկ քո միտքն ու հոգին ուրիշ բաներով են զբաղված: Դու չես անի իմ չարածը: Դու կանես միայն այն, ինչ քո ձեռքերը կսովորեն ինձանից, իսկ միտքդ ու հոգիդ լցված են աստղերի լույսով: Արեգակը չի ընդունի դա...

— Ես ուզում եմ հասկանալ այն, ինչ ոչ ոք բացատրել չի կարողանում,— խոստովանեց պատանին:— Ես վաղուց եմ ուզում հասկանալ...

— Դու անպայման կհասկանաս,— հառաչեց ծեր Արիգին:— Եվ չնայած դու չցանկացար իմ գործը շարունակել, այնուամենայնիվ քանի դեռ ես կամ այս աշխարհում, ամեն ինչով կօգնեմ քեզ...

Այդ զրույցից մի քանի ամիս անց Ռուշուան ավանի ծայրին, փոքրիկ բլրի վրա, իր նախագծով քարե մի անծածկ շինություն կառուցեց: Այդ շինության պատերը ճշգրտորեն նայում էին հորիզոնի տարբեր կողմերին, և նրանց վրա ամրացված էին Արեգակի տեսքով մետաղե շրջանաձև սկավառակներ, որոնք Ռուշուան ձուլել էր ծեր վարպետի պնդմամբ: Ցերեկվա լուսատուի տեսքով այդ սկավառակները նրան պետք է օգնեին հասկանալ գիշերային երկնքի գաղտնիքները:

Իսկ քարե պատերի ներսում նա կավից մի ավելի բարակ ու թեք պատ էր շարել, որը նայում էր ուղիղ դեպի Բևեռային աստղը, որը, ըստ նրա, ղեկավարում էր մյուս բոլոր աստղերի շարժումները: Այդ պատին մետաղե շատ բարակ մի թիթեղ էր ամրացրել, որի վրա ամեն գիշեր խնամքով նորանոր աստղեր էր նկարում:

Այսպես հազարավոր տարիներ առաջ ծնվեց առաջին աստղադիտարանը Հայաստանի տարածքում: Այսպես Ռուշուա-աստղագետը մետաղագործների ավանում կառուցեց շատ պարզ ու հասարակ մի շինություն, որտեղից պարզկա օրերին նայում էր աստղերին, մոլորակներին ու Լուսնին...



# ՋՐԱՀԱՐՍԸ

Է. ԿԵԼԴԵՐԱՐՈՒ (Ռումինիա)

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Ջութակը կրծքին սեղմած, խիտ եղեգնուտով ճամփա բացելով, գնում էր նա դեպի կախարդական լիճը: Նա ուզում էր լսել, թե ինչպիսի խորհրդավոր մեղեդիներ են ապրում այնտեղ, լռության մեջ, որը երբեմն միայն ճահճահավն է խլացնում իր ճիչերով:

Նա ականջ կդնի, հետո կնվագի ինքը, կնվագի իր առաջին կոնցերտը:

Թռչուննե՛ր, ուռինե՛ր ու կղզյակնե՛ր, այսօր ձեզ համար իր առաջին կոնցերտը կնվագի ապագա մեծ կոմպոզիտոր և ջութակահար Միլուցե Չերնեյը:

Ահա լիճը:

— Մի-լու-ցե՛:

Այդ ո՞վ է... Թե՞ իրեն թվաց:

Ձայնը բարակ է, թեկթեկում և գալիս է ասես լճի հատակից: Բայց, ո՛չ, հատակից չէ: Ա՛յ այնտեղ, ուր արեգակի վերջին ցոլքերի տակ ջուրը շառագունել է, ջրահարսն է դուրս եկել ջրից՝ չորացնելու իր խիտ վարսերը:

— Միլուցե՛, հե՛յ, ի՞նչ է, խլացե՞լ ես:

Տարօրինակ բան, ջրահարս է, բայց խոսում է այդպես կոպիտ...

— Այդ ի՞նչ է, դեռ էլի բարկացա՞ծ ես ինձ վրա: Վե՛րջ տուր, արի՛ այստեղ լողանանք: Սքանչելի՜ ջուր է: Ո՜ւ-ո՜ւ-ո՜ւխ...

Եվ նույն պահին ջրահարսը չքացավ ջրի տակ և լճի վրա մնաց միայն նրա ձայնի զրնգուն արձագանքը:

Միլուցեն ապշահար իջավ դեպի լճափը: Նրա ուշքը տեղն եկավ միայն այն ժամանակ, երբ մոշի թփերի մեջ ոտքը դիպավ ինչ-որ մեկի բոկոտիկներին: Նա որտե՞ղ է տեսել այդ կոշիկները: Եվ այդ կարմիր շրջազգեստը, որ կախված է ուռենու ճյուղից: Հա՜... Դա նա է, նորից նա: Նույնիսկ այստեղ էլ հանգիստ չի տալիս... Իսկ ինքը հիմարի նման նրան ջրահարսի տեղ է դրել: Ծիծաղելի է նույնիսկ, Ռադուկա Պոպա և ջրահարս:

— Դե ի՞նչ, Միլո՛ւցե, չե՞ս գալիս:

Աղջկա ձայնը լսվում էր հենց Միլուցեի մոտից:

— Թե՞ ես ինքս դուրս գամ: Դե լավ, գալիս եմ: Ես վաղուց էի ուզում քեզ հետ լրջորեն խոսել: Եվ տես ինչ հաջողություն, հանդիպեցի այստեղ...

Միլուցեն անորոշ ինչ-որ բան քրթմնջաց, թևի տակն առավ ջութակը և, թիկունքն անելով աղջըկան, արագ ետ դարձավ:

Ռադուկան զարմանքից ուսերը վեր քաշեց, բայց հանկարծ նրա աչքերը զայրույթից բռնկվեցին և նա Միլուցեի ետևից գոչեց.

— Զզվելի՜: Ծլնգացրո՛ւ, ծլնգացրո՛ւ քո այդ փայտե տուփը: Որոշել ես գորտերի հե՞տ բարեկամություն անել: Համե՞րգ ճահճում: Հա՜, հա՜, հա՜: Ոչի՛նչ, քո հարցը կքննենք, և քո գլխից իսկույն կցնդի այդ ամբողջ մշուշը: Թե չէ քիթը ցցել է վեր, անում է՝ ինչ խելքին փչում է, ու հետո էլ նվնվում, թե «իրեն չեն հասկանում»:

Բայց Միլուցեն չէր լսում, նա հեռանում էր առանց շրջվելու և արժանի չէր համարում գոնե մի անգամ նրան նայել:

«Թող ինչ ուզում է, ասի»...—մտածում էր Միլուցեն... Ի՞նչ է ուզում նա իրենից երաժշտության ու անդորրի այս թագավորությունում: Սա իր անկյունն է, իր անկյունը, որը հենց ինքն է գտել: Ռադուկան չի կարող իրեն հասկանալ: Նրան հարկավոր է միայն սպորտ, և այս կախարդական լիճը նրա համար սոսկ լողի վարժությունների տեղ է: Գուցե չարժեր էլ հիմա այստեղից հեռանալ: Հավանաբար պետք էր մի լավ դաս տալ այդ աղջկան այն ամենի համար, ինչ եղել էր վերջին ժամանակներս և հենց այսօրվա համար էլ...

Եվ վերջապես ո՞վ է այդ Ռադուկա Պոպը, որ ամբողջ ժամանակ կանգնում է իր ճանապարհին: Մի քանի ամիս առաջ տեղափոխվել են նոր բնակարան, դարձել է Միլուցեի հարևանը ու հիմա սովորում է նրանց դասարանում: Եվ ի՞նչ է իրենից ներկայացնում: Ճիշտ է, ֆիզկուլտուրայից միշտ էլ բարձր թվանշան է ստանում, դրա համար էլ նրան ընտրեցին ջոկատի սպորտ աշխատանքների համար պատասխանատու: Իսկ մնացած հարցերում սովորական աղջիկ է, ինչպես բոլոր աղջիկները: Մի ամիս առաջ, երբ Ռադուկան գործի անցավ՝ վոլեյբոլի թիմ կազմակերպելու, ամեն օր ողբում էր, հենց որ մեկնումեկը հրաժարվում էր ցուցակագրըվել, սկսում էր նվնվալ: Բայց Միլուցեի հախից գալ չկարողացավ... Պատի թերթում էլ գրեց, ժողովում էլ խոսեց, ամեն ինչ ապարդյուն:

Վիրավորվե՞լ: Միլուցեն չէր էլ մտածում... Մի՞թե կարելի է աղջիկներին բանի տեղ դնել ու նրանցից նեղանալ: Խոր վիրավորանքը, ինչպես և մեծ բարեկամությունը, լինում է միայն տղամարդկանց մոտ... Իսկ Ռադուկայի հետ նա պարզապես դադարեց խոսելուց: Եվ ի՞նչ բացատրես նրան, թե արտիստի համար անվայել է կիսամերկ ցատկոտել ու վազվզել ստադիոնով մեկ, որ սպորտը, վերջ ի վերջո դատարկ բան է... Եվ հետո նրա ի՞նչ գործն է, թե ինքը կղզիացած է և, ինչպես նրան է թվում, քիթը ցցած է ման գալիս: Նա ի՞նչ է հասկանում երաժշտությունից: Չնայած ցանկության դեպքում

հեշտությամբ կսովորեր երաժշտությունը գնահատել: Նրա հայրը երաժշտության ուսուցիչ է, ասում են, որ երիտասարդ հասակում սքանչելի ջութակահար էր և Բուխարեստի կոնսերվատորիայի Մեծ դահլիճում նույնիսկ ելույթներ է ունեցել: Պատերազմը կտրել է նրան բեմից, և նա այլևս երբեք չի վերադառնա այնտեղ: Բայց և հիմա էլ է նվագում: Եվ այն էլ ինչպե՜ս: Քանի-քանի՜ անգամ է Միլուցեն թաքնվել յասամանի թփերի մեջ, որպեսզի լսի նրա հիասքանչ նվագը: Լսել հաջողվում էր միայն այն ժամանակ, երբ լուսամուտը բաց էր լինում:

Այդ ժամանակ Միլուցեն նախանձում էր այդ հիմար աղջկան: Նա այնտեղ էր, կարող էր սրտի ուզածին չափ լսել այդ հրաշալի երաժշտությունը... Բայց թե նրա՝ Ռալուկայի համար, դա ոչինչ էլ չարժեր: Այն ժամանակ երբ հայրը նվագում էր, նրա մտքերը հավանաբար թափառում էին վոլեյբոլի հրապարակում կամ, որ ավելի վատ է, զբաղված էին նոր շրջազգեստով: Միլուցեն մի անգամ տեսել էր, թե նա ինչպես է պտտվում հայելու առջև:

Մտածելով այդ ամենի մասին, Միլուցեն աննկատելի մոտեցավ իրենց տանը: Նա զարմանքով հայացքը բարձրացրեց, երբ հասկացավ, որ կանգնած է իրենց դարպասի առջև:

Եվ հանկարծ տղայի սիրտը անհանգիստ տրոփեց: Նա տեսավ, որ փողոցը կտրելով անցնում է Ռալուկայի հայրը՝ երաժշտության ուսուցիչը: Միլուցեն ձեռքը գցեց դռան փականին, շտապելով թաքնվել: Նրան թվում էր, որ իր բոլոր մտքերը կարելի է կարդալ դեմքի վրա, բայց հենց այդ պահին նա լսեց.

— Մի րոպեով կարելի՞ է...

Միլուցեն նայեց շուրջը. բացի իրենց երկուսից մոտակայքում ոչ ոք չկար:

— Այո՛, այո՛, երիտասա՛րդ, այդ ես եմ ձեզ կանչում: Դու Ռալուկայի հետ ես սովորում, այնպես չէ՞: Ես նրա հայրն եմ: Արի՛ ծանոթանանք,— նա մոտեցավ և ձեռքը մեկնեց:— Թեոդոր Դոպրե, երաժշտության ուսուցիչ:

— Միլուցե Չերնեյ, աշակերտ:

— Աշակերտ: Հենց այդքա՞ն: Ո՛չ, ո՛չ, կարող ես համարձակ ասել՝ կոմպոզիտոր և ջութակահար:

— Ով... Ե՞ս...— Միլուցեն կանգնած տեղը զարմանքից քար կտրեց:

— Դե լա՛վ, լա՛վ, չէ՞ որ ես ամեն ինչ գիտեմ: Կեցցե՛ս...

— Միգուցե դուք սխալ եք... Ես... Գիտեք ի՞նչ...

— Սխալվե՞լ: Բայց մի՞թե դու չես Ռալուկայի ընկերը, որն ապրում է այս տանը և միշտ այնպես ոգեշնչված ջութակ է նվագում: Ահա թե ինչ կցանկանայի քեզ ասել. ես լսել եմ քո կոմպոզիցիան: Ես և աղջիկս անցնում էինք քո լուսամուտի տակով և...

— Ե՞վ...

— Եվ, ինչպես միշտ, Ռալուկան իմ ուշադրությունը հրավիրեց քո նվագին:

— Ռա-լո՞ւկան:

— Այո՛: Եվ ես չկարողացա հիշել, թե ով էր այդ եղանակի հեղինակը, որը դու նվագում էիր: Դա ինձ տարօրինակ թվաց: Բայց Ռալուկան ասաց, որ դու ինքդ ես հորինել այդ երաժշտությունը: Ես քո երաժշտությունը լսեցի մեծ ուշադրությամբ և այն ինձ դուր եկավ: Ես քեզ այժմ կանգնեցրի, որ այդ մասին ասեմ:

— Դա ինձ համար... մի այնպիսի ուրախություն է...

— Ուրախանալը, Միլո՛ւցե, թող ապագայի՛ն: Եթե ուզում ես դառնալ իսկական երաժիշտ, դու պետք է շատ աշխատես, համառորեն սովորես: Եթե ցանկանում ես, ես կօգնեմ քեզ...

— Շատ... շատ շնորհակալ եմ, բայց դուք երևի չգիտեք, որ ես և Ռալուկան... կամ գուցե նա ձեզ ասել է...

— Չգիտեմ և ոչինչ էլ չեմ ցանկանում գիտենալ: Ինձ պարզապես հետաքրքրում է, մենք գործի կանցնե՞նք, թե՞ ոչ:

— Այո՛, իհարկե: Անչափ շնորհակալ եմ, շնորհակալ եմ ձեզնից:

— Խնդրեմ: Իսկ այժմ ի՛նձ տուր պարտիտուրան: Ես այն աչքի կանցկացնեմ, իսկ վաղը չէ մյուս օրը, երեկոյան, ե՛կ ինձ մոտ, կխոսենք:

...Եվ ահա Միլուցեն մտնում է ուսուցչի տունը: Ցավոք սրտի, դա ոչ միայն ուսուցչի տունն է, այլև Ռալուկայի տունը: Նա արդյոք պատմե՞լ է հորը իրենց գժտության մասին...

Երբեք չես հասկանա նրանց: Ահա, օրինակի համար, ո՞վ կարող էր զգալ, թե ինչու է նա անվերջ ուսուցչի ուշադրությունը հրավիրում իր նվագի վրա և միաժամանակ ստեղծում ամեն տեսակի առիթներ, որպեսզի Միլուցեին ցույց տա իր արհամարհանքը: Եթե դուռը հիմա նա բացի, ապա շատ հավանական է, որ անմիջապես իրեն վռնդի: Այո՞, այդպե՞ս կվարվի: Դուռը կշրխկացնի հենց իր քթի առաջ: Չէ, թերևս չհամարձակվի: Ինչքան չլինի, ուսուցիչն է իրեն հրավիրել... Այո, բայց հենց ուսուցիչն էլ... Երբ նա կանգ առավ Դոպրեների տան առջև, մտքերը դեռևս խառնիխուռն պտտվում էին նրա գլխում: Այդ րոպեին ինչ-որ մեկը պատուհանը բացեց և Միլուցեն ետ ընկրկեց: Դեպի փողոց հորդեց հնչյունների հեղեղը: Միլուցեն տեղում սառեց: Այդ ի՞նչ էր: Պատուհանից լսվում էր այն եղանակը, որն ինքը՝ Միլուցեն էր գրել... Այդպես հստակ առաջին անգամն էր հնչում այդ երաժշտությունը, և ինքն էլ ասես առաջին անգամն էր լսում այն:

## ՓՈԹՈՐԻԿ ՄԻ ԲԱԺԱԿ ՋՐՈՒՄ

Այսպես է որակել ժամանակին Սան-Մարինո փոքրիկ հանրապետության քաղաքական իրադրությունը ֆրանսիացի փիլիսոփա և գրող Մոնտեսքյոն (1689-1755):

Նույն բառերով է ընդունել 1798 թվականին ֆրանսիական բուրժուական հեղափոխությունից հետո Ժնևում տեղի ունեցած հուզմունքի լուրը թագաժառանգ Պավել I-ը:

Մոնտեսքյոյի արտահայտությունը անգլիացիները թարգմանել են գրեթե բառացի. «Փոթորիկ թեյի գավաթում»:

Եվ այսպես, այս արտահայտության հեղինակը Մոնտեսքյո՞ն է: Մասնակիորեն միայն: Այս պատկերավոր արտահայտությունը հայտնի է եղել դեռևս հռոմեացիներին ու հույներին, ճիշտ է մի քիչ այլ «ձևակերպությամբ»: Օրինակ, Ցիցերոնի (մ. թ. ա. I դար) մոտ հանդիպում ենք այսպիսի խոսքի. «Փոթորիկ է բարձրացնում զոհաբերության համար հեղվող գինու գդալում», իսկ հույն գրող Աթենեոսը (մ. թ. II-III դդ.) գրում է. «Փոթորիկ կճուճի մեջ»: Այժմ «Փոթորիկ մի բաժակ ջրում» արտահայտությունը գործածվում է այս իմաստով՝ աղմուկ, հուզում չնչին առիթով, ուստի և ուշադրության ոչ արժանի պատճառով:

## ՀԱՆՆԻԲԱԼԸ ԴԱՐՊԱՍՆԵՐԻ ՄՈՏ Է

Հաննիբալը Հռոմի գոյությանն սպառնում էր մ. թ. ա. III դարում, բայց հռոմեացիները նրան հիշում են նաև երկու հարյուրամյակ անց: Երբ 43 թվականին հանրապետության թշնամի Մարկոս Անտոնիոսը մոտենում է Հռոմին, մեծ հռետոր՝ պերճախոս Ցիցերոնը ավելի սոսկալի բառեր չի գտնում, քան. «Հաննիբալ անտէ պորտաս», այսինքն՝ «Հաննիբալը դարպասների մոտ է (Հռոմի)»: Ահեղ կարթագենցու հենց միայն անունը սարսափով է պատում հռոմեական ողջ սենատը:

«Հաննիբալը դարպասների մոտ է»՝ Ցիցերոնի բացականչությունը այժմ նշանակում է. «Մահացու վտանգ է սպառնում», կամ «Հայրենիքը մեծ վտանգի մեջ է»: Այս իմաստով էլ սա օգտագործվում է մինչև այժմ:

## ՀԱՆՆԻԲԱԼԻ ԵՐԴՈՒՄԸ

Հաննիբալ Բարկան, Կարթագենի հռչակավոր զորավարը, Հռոմի համառ ու կատաղի թշնամին, դեռևս իննամյա հասակում երդում է տալիս հորը՝ Կարթագենի տիրակալ Համիլկարին, հարատև պայքար մղել Կարթագենին սպառնացող Հռոմի դեմ:

Նա պահեց իր խոսքը, և բազմիցս Հռոմի ճակատագիրը կախված եղավ մազից: Բայց, ի վերջո, հաղթանակը տարավ Հռոմը: Հաննիբալը մեռավ կռվի մեջ՝ թունավորվեց, որպեսզի չընկնի թշնամու ձեռքը:

Այն ժամանակից ի վեր, մարդիկ Հաննիբալի երդում են կոչում այն խոստումը, որ մարդ տալիս է պատանի հասակում, մտադրվելով ողջ կյանքը նվիրաբերել սրտին մի գործի:

Մեր պատմության մեջ հայտնի է հեղափոխականներ Գերցենի և Օգարյովի հաննիբալյան երդումը, որ նրանք տվել են վաղ երիտասարդական տարիներին՝ ողջ կյանքում պայքարել Ռուսաստանի ցարական ռեժիմի դեմ: Նրանք հավատարիմ մնացին այդ երդմանը մինչև վերջ:

---

Միլուշեն մի շնչով վեր սլացավ սանդուղքներով՝ բաճկոնը չկոճկած, մազերը խռիվ:

Զանգի մի կարճ ղողանջ՝ և դուռը հանդարտ բացվեց: Խավար նախասենյակում նշմարվեց ուսուցչի կերպարանքը:

Մատը դնելով շրթունքներին, նա շշնջաց.

— Լսո՞ւմ ես, քո ստեղծագործությունն է նվագում: Արի՛ ետևիցս:

— Նվագո՞ւմ է: Ո՞վ:

— Ինչպես թե՝ ով:

— Մի՞թե ոչ՝ դուք...

— Ե՞ս... Ես արդեն վաղուց է, ինչ չեմ նվագում, թանկագինս: Պատերազմից հետո, այն ժամանակից, ինչ...

Միլուշի հայացքը սահեց ուսուցչի ձախ ձեռքի վրայով և կանգ առավ ձեռնոցի վրա: Միայն հիմա նա հիշեց, որ ուսուցչին երբեք չէր տեսել առանց ձեռնոցի:

— Ներեցեք ինձ...

— Սուս... Նստի՛ր ու լսի՛ր:

Միլուշեն նստեց ուսուցչի կողքին: Աչքերը փակեց և երաժշտության հնչյունների մեջ իսկույն տեսավ լիճը, որն իր ափերն էր գլորում նրա հայացքի առջև: Շրշում էին թփուտները, իրար էին գրկում լացող ուռիների սաղարթները, ճչում էին ճահճահավերը, ոսկե ձկնիկները ոստնելով ակոսում էին լճի գորշ երկնավուն ջրերը... Ամեն ինչ այնպես էր, ինչպես հեքիաթում:

Միլուշեին չզարմացրեց նույնիսկ այն, որ սթափվելով, հարևան սենյակի ապակյա կիսաբաց դռան միջով տեսավ... ջրահարսին: Հենց այնպես, ինչպես նրան տեսել էր մի անգամ այնտեղ, քուն մտնող լճի խորքում, սպիտակ շուշանների վրա: Միայն թե այժմ ջրահարսը իր մազերը երկու ծամի հյուսք էր արել և նվագում էր, նվագում էր ջութակը...

Թարգմ. ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆԻ




## «Հասկեր» ամսագրի լույս ընծայման 70-ամյակը

*Կատարինե Լիսիցյանը իր ամբողջ կյանքը նվիրել է հայ երեխաների կրթությանը։ Ամուսնու՝ նշանավոր մանկավարժ և գրող Ստեփան Լիսիցյանի հետ Թիֆլիսում հիմնել է տարրական երկսեռ դպրոց, որը հետագայում դարձավ գիմնազիա։ Կատարինե Լիսիցյանը անմիջական մասնակցություն է ունեցել «Հասկեր» մանկական ամսագրի հրատարակման գործին, որի մասին էլ պատմում է նա ստորև տպագրվող իր հիշողություններում։*

# ԴԺՎԱՐ ԾՆՈՒՆԴ

ԿԱՏԱՐԻՆԵ ԼԻՍԻՑՅԱՆ

1905 թվից Թիֆլիսում սկսեց հրատարակվել «Հասկեր» մանկական պատկերազարդ ամսագիրը։ Սկզբում խմբագիր-հրատարակիչը ես դարձա, քանի որ Ստեփան Լիսիցյանը քաղաքական հայացքներով համարվում էր «անբարեհույս» և ամսագիր հիմնելու իրավունք չարտոնվեց նրան։ Ամսագիրը պետք է ունենար երկու բաժին՝ մանկական և մեծերի՝ ծնողների համար։ «Հասկերը» ուներ նաև հավելված՝ «Մանկավարժական գրադարան» մատենաշարը։ Դրանք հիմնականում մանկական հոգեբանության և ընտանեկան դաստիարակության նվիրված ուսումնասիրություններ էին։ 1913 թվին «Հասկերի» հրատարակությունը անցավ «Նվէր մանուկներին» ընկերությանը, և այդ ժամանակ էլ հնարավոր եղավ Ստեփան Լիսիցյանին խմբագիր հաստատել։ «Հասկեր» ամսագիրը իր շուրջն էր համախմբել մանուկների համար ստեղծագործող բոլոր հայ գրողներին, ինչպես նաև նրանց, ովքեր մինչ այդ գրում էին միայն մեծերի համար. Հովհաննես Թումանյան, Ավետիք Իսահակյան, Շիրվանզադե, Դերենիկ Դեմիրճյան, Վրթանես Փափազյան, Լեո, Հակոբ Աղաբաբ, Աթաբեկ Խնկոյան (Խնկո-Ապեր), Հայրապետ Հայրապետյան, Գևորգ Բաշինջաղյան, Սիմակ։ Գրողներից բացի, ամսագրին ակտիվորեն աշխատակցում էին նկարիչներ, որոնցից առանձնապես հայտնի էին Ախիկյանը և Ռոտտերը։

Ստեփան Լիսիցյանը գրում էր հեքիաթներ, պատմվածքներ, հոդվածներ, թարգմանություններ էր կատարում, սակայն ժամանակի մեծ մասը տրամադրում էր «Հասկերի» խմբագրմանը, հեղինակների հետ համատեղ աշխատելուն։ Աթաբեկ Խնկոյանից մի քանի հաջող գործ ստանալով, Ստեփան Լիսիցյանը նրան հրավիրեց Թիֆլիս, տեղավորեց մեր տան հարակից շենքում, որպես ուսուցիչ աշխատանքի ընդունեց մեր դպրոցում, մշտապես օգնում էր նրան կատարելագործելու առակի ժանրը։ Հովհաննես Թումանյանը Ստեփան Լիսիցյանին կարդում էր ոչ միայն իր ավարտուն ստեղծագործությունները, այլև նոր սկսածը, և պատմում էր իր հղացումների մասին։ Հիշում եմ, թե ինչ վեճեր եղան «Գիքորի» շուրջը։ Սրբուհին և Լևոնը (Լիսիցյանների զավակները—ԽՄԲ.) լաց էին լինում և չէին ուզում, որ Գիքորը մահանա, պահանջում էին «առողջացնել»։ Սակայն Հովհաննես Թումանյանը, Ստեփան Լիսիցյանը և խմբագրական խորհուրդը չհամաձայնվեցին, քանի որ հերոսի այդ վախճանը ավելի տրամաբանական էր, դաստիարակչական ավելի մեծ ուժ կունենար, ավելի կընդգծեր նրա ճնշված վիճակը և կյանքի անողոքությունը։

«Հասկերի» ամեն համարի լույս ընծայումից առաջ տեղի էր ունենում խմբագրական խորհրդի նիստ՝ հիմնական աշխատակիցների և Լևոնի ու Սրբուհու մասնակցությամբ։ Ուշադրությամբ լսվում էին երեխաների կարծիքները այս կամ այն ստեղծագործության վերաբերյալ։ Մենք ստանում էինք ինչպես Ռուսաստանում, այնպես էլ արտասահմանում լույս տեսնող մանկական ամսագրեր։ Լևոնին և Սրբուհուն հանձնարարված էր կարդալ ռուսական, ֆրանսիական և գերմանական ամսագրերը ու կարդացածի մասին իրենց տպավորությունները հայտնել։ Դա խմբագրությանը օգնում էր թարգմանական նյութեր ընտրելիս։

Նյութապես ամենևին էլ ապահով չէր «Հասկերի» հրատարակությունը։ Ստեփան Լիսիցյանը ամսագրի ծախսերին էր տրամադրում Ներսիսյան դպրոցում ստացած իր աշխատավարձը։ Նրա առանձնասենյակը վեր էր ածվել խմբագրատան։ Մենք հնարավորություն չունեինք ոչ մի աշխատակից պահելու։ Երբ լույս էր տեսնում ամսագրի հերթական համարը, տպաքանակը տեղափոխվում էր մեր տուն։ Բոլորս հավաքվում էինք առանձնասենյակում։ Ես ստուգում էի ամեն մի օրինակը, ապա հաշվում, մայրս տեղավորում էր հավելվածները, Սրբուհին և Լևոնը ծանրոցներ էին պատրաստում, գրում բաժանորդների հասցեները, որոնք հետո Լևոնը փոստ էր տանում։

1917 թվին «Ազատություն» հոդվածով Ստեփան Լիսիցյանը ողջունեց Հոկտեմբերյան հեղափոխությունը և երեխաներին բացատրեց այդ իրադարձության նշանակությունը։ «Հասկերը» լույս տեսավ մինչև 1922—23 ուսումնական տարին։ Գեղարվեստական գործերից բացի, ամսագրում տպագրվում և լուսաբանվում էին գիտական հարցեր, առանձնապես բնագիտական, ինչպես նաև գրական՝ հայրենի և արտասահմանյան գրականության վերաբերյալ։ «Հասկերը» կարևոր դեր խաղաց իր ժամանակի կրտսեր, միջին և ավագ տարիքի երեխաների դաստիարակության և մեր մանկական գրականության զարգացման գործում։





«ԱՇՈՒՆ» 1975 թ. (յուղանկար)



ՔԱՆԴԱԿԱՅԻՆ ԴԻՄԱՆԿԱՐՆԵՐ







«ԱՆԿՆԹԱՐԹ» 1972 թ. (յուղանկար)

# Սուրեն Ստեփանյան

(Ծննդյան 60-ամյակի առթիվ)

ՀՍՍՀ վաստակավոր նկարիչ Սուրեն Ստեփանյանը մեկն է այն նկարիչներից, որ աշխատակցում է «Պիոներ»-ին և «Ծիծեռնակ»-ին՝ նրանց ստեղծման առաջին իսկ օրից: Տաղանդավոր նկարիչը արդեն մի քանի տասնամյակ է, ինչ ուրախացնում է մանուկներին իր ինքնատիպ, զուտ ստեփանյանական արվեստով, իսկ երիտասարդ նկարիչների համար նրա արվեստը հանդիսանում է յուրատեսակ մի դպրոց: Նրա յուրաքանչյուր ելույթը մեր ամսագրերի էջերում ուրախալի մի երևույթ է, որով նկարազարդման վարպետը ցուցադրում է իր անսպառ երևակայությունը, մտքի անսպասելի ու երբեմն էլ տարօրինակ թռիչքները, որ կարելի է և նկարազարդման գլուխ անվանել:

Սուրեն Ստեփանյանը այն հայ արվեստագետներից է, որոնց մասին ասում են, թե մշակույթի այս կամ այն բնագավառը բարձրացրեց մի նոր աստիճանի:

Դեռևս քառասունական թվականներին, տակավին երիտասարդ Սուրեն Ստեփանյանը ցուցահանդեսում հանդես եկավ «Ալլադինն ու կախարդական լամպը» նկարաշարքով՝ դիտողներին իր հետ ճանապարհորդության տանելով հեքիաթների կախարդական ու զարմանալի աշխարհը:

Սուրեն Ստեփանյանին բնորոշ է միշտ երիտասարդ լինելու ձիրքը, հախուռն բնավորությունն ու արտիստիկ կեցվածքը, որով նա այնքան նման է իր արվեստին ու նրանում ապրող հերոսներին:



*«ԱԼԱԴԴԻՆԸ ԵՎ ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԼԱՄՊԸ» գրքի նկարազարդումներից՝ մեկը*

Նա, սակայն, ո՛չ միայն վարպետ նկարազարդող ու ձևավորող է, այլև գեղանկարիչ է ու քանդակագործ: Կերպարվեստի որ բնագավառում էլ որ ըստեղծագործում է արվեստագետը՝ նա ինքն իր ու տրված նյութի նկատմամբ խստապահանջ է, գիծը, ձևը, գույնը նրա մոտ ոչ միայն արտահայտում են բովանդակություն, այլև իրեն՝ տաղանդավոր արվեստագետին, նրա ներքնաշխարհը, ճաշակը, վերաբերմունքը աշխարհի ու կյանքի նկատմամբ, իսկ այդ վերաբերմունքը, որպես կանոն միշտ փոքրինչ անսովոր է, շեշտված, շնչավորված ու բոցկըլտուն: Եթե նա նկարում է մեր հայրենի բնաշխարհից որևէ պատկեր, գտնում է ստեղծման մի նոր բանալի: Եթե նկարում է կոմպոզիցիոն կտավ, ապա այստեղ էլ Սուրեն Ստեփանյանը բոլորովին այլ մոտեցում ունի, իսկ քանդակներ կերտելիս ունի լրիվ ուրիշ վերաբերմունք: Սուրեն Ստեփանյանը, դժվար է ասել, իր արվեստում փնտրո՞ւմ է, թե՞ գտնում միայն: Նրա աշխարհը երբեմն բոնկուն, երբեմն էլ մարմրուն ու դարձյալ բռնկվելու պատրաստ հոգեվիճակ ապրող արվեստագետի աշխարհ է, որտեղից և ծնվել, ծնվում ու դեռ կծնվեն ստեղծագործություններ, որոնք կցուցադրեն իրենց տիրոջ բարդ ու անհանգիստ ներքնաշխարհը:

Շնորհավոր Ձեր ծննդյան տարեդարձը, սիրելի նկարիչ, մանուկների մեծ բարեկամ:

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*

# ՁՄՌԱՆ ԵՐԳԵՐ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

1

Ձմեռն եկավ,
Հողը սառեց,
Սարը սառեց,
Ջուրը սառեց,
Եվ նա իր մեծ,
Սառցալույս
Խանեղներով
Լեռան պատռած
Կուրծքը կարեց,
Կարեց վերքը
Խոր վիհերի,
Եվ շուրջն անուշ
Հանդարտություն
Անպարպայեց:

Այնքան պիտի
Քնեն այդպես
Հող ու առու,
Մինչև հողում
Հասունանա
Հունդը բարու,
Եվ այնտեղից
Պողպայրման
Ձայնով ուժգին
Ձայն տա վերև՝
Արեգակին:
Պաղ թմբիրից
Արեգակը ելնի կրկին,
Նայի ներքև
Իր շիկացած
Թիկնոցն առած,
Եվ ջերմանա
Նոր բխումով
Հողը սառած:

Ձմեռն եկավ.—
Հողը սառեց,
Հովը սառեց,
Եվ երկնքում
Սառան այնքան
Ճառագայթներ,
Որ թվում էր
Արեգակի
Ծոցը պիտի
Հիմա հատներ:

2

Լուսիկ տատը,
Ա՜խ, Լուսի՛կ տատ...
Լուսիկ տատը
Մկրատն առած,
Երկնքի մեջ
Սառա՛ծ, սառա՛ծ
Ճառագայթներն է՛
կտրատում:
Եվ տես, ճերմա՛կ,
Ճերմա՛կ, ճերմա՛կ,
Խոշո՛ր, խոշո՛ր
Փաթիլներով
Ճառագույթե
Ձյուներն ահա
Իջնում են ցած,
Հողն են պատում...
Լուսիկ տատը,
Ա՜խ, Լուսի՛կ տատ...
Այս որքա՜ն շատ
Ճառագայթներ
է կտրատում:





*«Ամեն ոք պետք է հասկանա և սիրի երաժշտությունը»*

# ԱՄԵՆ ԿԻՐԱԿԻ ՍՊԱՍՈՒՄ Է ՔԵԶ

Երևանի «Դպրոցականի ֆիլհարմոնիան» դարձել է մանուկների և պատանիների երաժշտական և գեղագիտական դաստիարակության ճանաչված օջախ: Հիմնադրվել է 1963-ին, նախաձեռնողներն են կոմպոզիտոր Վ. Բալյանը և երաժշտագետ (ներկայումս՝ գեղարվեստական ղեկավար) Ի. Ղարագյոզյանը: Այդ ժամերին առանձնապես լուսավոր և տոնական է դառնում համերգային մեծ դահլիճը: Ծրագրերը բազմազան են, դասախոսություններ կարդացվում են հայերեն և ռուսերեն: Կենսուրախ ցերեկույթներ՝ ամենափոքրիկների համար (երգեր, խաղեր, մանկական օպերայի ցուցադրում, երաժշտական գործիքների շքերթ): Միջին տարիքի երեխաների համար թեմատիկ համերգներ՝ երաժշտական ժանրեր և ձևեր, կոմպոզիտորների և կատարողների դիմանկարներ, երաժշտական ուղևորություն այլևայլ երկրներում:

Ավելի բարդ են բարձր դասարանցիների հետ անցկացվող զրույցները. 20-րդ դարի երաժշտության և պոեզիայի, ստեղծագործական պրոցեսի, լավ ճաշակի, «լուրջ» և «թեթև» երաժշտության մասին...

Բազմերանգ է նաև երաժշտական երգացանկը՝ երգեհոնային կոմպոզիցիայից մինչև հանրամատչելի երգ, ժողովրդական անպաճույճ մեղեդիից մինչև դասական սիմֆոնիա: Ծրագրերում առանձին տեղ են գրավում երեխաների համար և երեխաների մասին գրված գործերը՝ Ս. Պրոկոֆևի «Պետյան և Գայլը», «Ձմեռային խարույկը», Դ. Կաբալևսկու պատանեկան կոնցերտները և խմբերգերը, Ա. Մանուկյանի «Չարի վերջը» և Ն. Բրյանսկու «Սուտլիկ փիսիկը» մանկական օպերաները և այլն:

Երեխաների համար ելույթ են ունենում լավագույն կատարողները՝ այս է «Դպրոցականի ֆիլհարմոնիայի» սկզբունքը: Նրա համերգների մշտական մասնակիցներն են Հայաստանի պետական սիմֆոնիկ նվագախումբը, կամերային անսամբլը, լարային կվարտետը, ակադեմիական երգչախմբային կապելլան և Հայաստանի երգչախմբային ընկերության երգեցիկ խումբը, պարի և երգի-պարի պետական անսամբլները, Հայաստանի էստրադային նվագախումբը, Հայֆիլհարմոնիայի և պետօպերայի մեներգիչներ, դրամատիկական թատրոնների դերասաններ: Ներգրավվում են նաև երաժշտական դպրոցների սաներ, մանկական ինքնագործ կոլեկտիվներ:

«Դպրոցականի ֆիլհարմոնիայի» հյուրերը եղան լենինյան մրցանակի դափնեկիրներ Ա. Խաչատրյանը և Դ. Կաբալևսկին, Կոմիտասի անվան կվարտետը, սովետական և արտասահմանյան հյուրեր, արտիստներ, հայ ճանաչված կոմպոզիտորներ, նկարիչներ, գրողներ, մանկական երգչախմբեր Բուլղարիայից («Բոդրա՛ սմյանա»), Մոսկվայից, Լենինգրադից...

Կազմակերպվում են նաև արտագնաց համերգներ հանրապետության երաժշտական և հանրակրթական դպրոցներում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում:

Որպես Սովետական Միության առաջին և լավագույն մանկական ֆիլհարմոնիաներից մեկը, Երևանի «Դպրոցականի ֆիլհարմոնիան» 1972-ին հատուկ զեկուցումով ներկայացվեց Թունիսում՝ երաժշտական դաստիարակության միջազգային ընկերության (ԻՄՄԵ) 10-րդ կոնֆերանսում:

«Դպրոցականի ֆիլհարմոնիա»-ն քո լավ բարեկամն է: Ամեն կիրակի նա սպասում է քեզ և քո ընկերներին:

*ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ*

## ԼԻՃԸ

Արևն ընկել գիրկը ջրի
Լողանում է ու ծիծաղում,
Ալիքների աչքերի մեջ
Իր ոսկեփայլ ցոլքն է մաղում:
Ալիքները խինդ են առնում
Ու իրար են փարվում հուզով.

Լվացվում են, կայտառանում
Արեգակի պայծառ լույսով:
Ժեռ քարերի տաք գրկի մեջ
Կակաչներ կան, շո՜ւնչ գարունքի,
Ու ծփում է լիճը անվերջ
Լցված շնչով արեգակի:



# Հարյուր ճանկյութ վոլտ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

— Ոչ, «էլեկտրական ձկներից» բացի, էլեկտրական հատկություններով օժտված չէ ոչ մի այլ կենդանի: Գալվանի եզրակացությունները սխալ են, փորձերը՝ կասկածելի,— պնդում էին մի շարք նշանավոր ֆիզիկոսներ: Դրանց կողմնակիցն էր նաև իր ժամանակի մեծ ֆիզիկոսներից մեկը՝ Ալեսանդր Վոլտան: Նա այս կարծիքին մնաց այնքան ժամանակ, մինչև որ ծանոթացավ Գալվանիի «Մկանային էլեկտրական ուժերի մասին» աշխատությանը:

1792-ի մարտի 24-ին Վոլտան սկսեց կրկնել Գալվանիի փորձերը և նույն թվականի ապրիլի 3-ին գրեց նրան. «Երբ ես ինքս ականատես եղա այդ հրաշալիքներին, երևակայեք՝ անվստահությունը ձեր փորձերի նկատմամբ վերածվեց ֆանատիզմի»:

Նույն թվականի մայիսի 5-ին համալսարանի մեծ դահլիճում կարդացած դասախոսությունը Վոլտան նվիրեց Գալվանիի կատարած փորձերին: Նա արժանին մատուցեց այդ հայտնագործություններին և միաժամանակ առաջ քաշեց այդ փորձերում գործադրվող նյութերի քանակական և որակական հատկությունների խիստ դասակարգման խնդիրը: Ըստ Վոլտայի, հենց դա էր դիմելու այդ փորձերից բխող ֆիզիկան: Նա գտավ, որ փորձաքարը՝ գորտը ինքնին ներկայացնում է էլեկտրաչափ (էլեկտրոմետր), ընդ որում տասնյակ անգամ ավելի զգայուն, քան ուկե թերթիկներից պատրաստված էլեկտրաչափը: Ուրեմն Գալվանիի շղթայում գորտը ոչ այլ ինչ էր, եթե ոչ չափիչ գործիք: Այդ հաստատելու համար Վոլտան դիմեց մի տարօրինակ փորձի. նա Գալվանիի շղթայում գորտը փոխարինեց իր սեփական լեզվով: Տարբեր մետաղներից պատրաստված կտրվածքներից մեկը դրեց լեզվի վրա, մյուսը՝ տակը և երբ դրանք միացրեց հաղորդալարով՝ ըզգաց աղահամ: Միշտ նույն համը, ինչ մենք հիմա կարող ենք զգալ, եթե մեր լեզուն մոտեցնենք էլեմենտի բևեռներին:

Վոլտան գիտեր, որ նույն համն ունեին նաև Գերիկի էլեկտրական մեքենայի և լեյդենյան շշի բևեռների արձակած կայծերը: Ուրեմն կասկածից վեր էր, որ նրա զգացած համը «էլեկտրականության համն էր», բայց առավել թույլ դրսևորումով:

Այսպիսով, Վոլտան գալվանական շղթայից հանեց գորտին և «ազատեց նրանց բնաջնջման վտանգից»:

Այնուհետև համոզված լինելով, որ գալվանական երևույթն ունի զուտ ֆիզիկական դրսևորում, Վոլտան շարունակեց իր փորձնական և տեսական հետազոտությունները, նպատակ ունենալով ստեղծել այնպիսի էլեկտրական աղբյուր, որից ստացվող հոսանքը լիներ ավելի մեծ էներգիայի: Նա զգաց, որ երկու հաղորդիչների մասնակցությունը քիչ է դրա համար, դրանց կոնտակտի պահին անջատված էներգիան՝ փոքր: Ուստի նա միաժամանակ շղթայի մեջ մտցրեց հարյուրից ավելի հաղորդիչներ՝ մեկը մյուսից անջատելով աղաջրով թրջված թղթերով: Եվ ի՞նչ, ստացվեց էլեկտրականության բավականին հզոր աղբյուրը՝ Վոլտայի սյունը: Երբ Վոլտան իր սյան վերին և ներքին ծայրերին միացրած հաղորդալարերը դրեց լեզվին, զգաց, որ ի հակադրություն Գերիկի էլեկտրական մեքենայի, իր ստեղծած աղբյուրը գործում է ոչ թե ընդհատումներով, այլ անընդհատ:

Վոլտան չբավարարվեց ձեռք բերածով՝ նա երազում էր ավելի մեծ հզորության էլեկտրական հոսանքի աղբյուր: Սյան հայտնագործումից անմիջապես հետո Վոլտան ստեղծեց հաստատուն հոսանքի նոր աղբյուր՝ դա իրենից ներկայացնում էր էլեկտրական մարտկոց, որի կազմի մեջ մտնող էլեմենտները ցինկի ու արծաթի էլեկտրոդներով և աղաթթվի լուծույթով լցված անոթներ էին՝ իրար միացված հաջորդաբար: Յուրաքանչյուր անոթում ընկղմված էր մեկ ցինկե և մեկ արծաթե էլեկտրոդ, ընդ որում անոթներից առաջինի արծաթե էլեկտրոդը միացվում էր երկրորդի ցինկե էլեկտրոդին, երկրորդի արծաթե էլեկտրոդը՝ երրորդի ցինկե էլեկտրոդին և այլն:

Ստացված էներգիան զգալի էր: Ժամանակակից աղբյուրների հետ, իհարկե, չի կարելի համեմատել, քանի որ Վոլտայի մարտկոցի էներգիան հազիվ բավարարեր, ասենք, դռան էլեկտրական զանգը հնչեցնելուն:

1800-ի մարտի 20-ին Վոլտան իր հայտնագործությունների մասին տեղյակ պահեց Լոնդոնի թագավորական ընկերությանը: Կարելի է ասել, որ հենց այդ օրվանից ֆիզիկոսներին հայտնի դարձավ հաստատուն հոսանքի աղբյուրների գոյությունը:

. Վոլտայի անունը հոլովվեց աշխարհի բոլոր համալսարաններում և գիտա-հետազոտական կենտրոններում: Մեկը մյուսի ետևից դասախոսու-

թյուններ կարդալու հրավերներ ստացվեցին բազմաթիվ երկրներից:

Վոլտան արձագանքեց նաև Ֆրանսիայից եկած հրավերին: Եվ առաջին պատեհ առիթով Վոլտան բռնեց Փարիզի ճանապարհը: Իտալիայից Փարիզ ճանապարհը տևեց չորս շաբաթ: Ճանապարհին ամենուր հանդիսավոր երեկույթներ էին տրվում նրա պատվին:

Փարիզում անհամբերությամբ նրան էին սպասում բոլոր «անմահները» (ֆրանսիական ակադեմիայի անդամները), դրանց թվում էին այնպիսի գիտնականներ, ինչպիսիք են Բերթոլեն, Բիոն, Լապլասը, Կուլոնը, Կյուվեն և ուրիշներ:

Փարիզում Վոլտային ընդունեց ինքը՝ Նապոլեոն Բոնապարտը:

Վոլտան դարձավ Երկաթյա խաչի և լեգեոնի պատվավոր ասպետ, ստացավ սենատորի և կոմսի կոչում:

Նապոլեոնը առիթը բաց չէր թողնում ներկա գտնվելու ֆրանսիական ակադեմիայի նիստերին (ինքը նույնպես ակադեմիայի անդամ էր): Եվ ահա մի օր ակադեմիայի գրադարանում տեսավ մի դափնեպսակ, որի վրա գրված էր՝ «Մեծ Վոլտերին»: Անմիջապես ջնջել տվեց «ե» և «ր» տառերը, նրանց փոխարեն գրել տվեց «ա» և «յ» տառերը:

Միշտն ասած, Վոլտան նեղվում էր Նապոլեոնի արտակարգ վերաբերմունքից: Նա տեսնում էր, թե ինչպես են «խանդում» ֆրանսիական ակադեմիկոսները. գնալով խորանում էր նրանց և Վոլտայի միջև եղած անջրպետը: Այնպես որ հայրենիքի ճանապարհը բռնելու պահը մոտենում էր:

Վոլտայի կյանքի և գործունեության վերաբերյալ փաստերն անթիվ են, փարիզյան միջադեպերը՝ շատ: Ուստի թողնենք նրանց թվարկումը և վերադառնանք դեպի այդ մեծ գիտնականի կյանքի սկիզբը. որտեղի՞ց էր սերում նա, ովքե՞ր էին նրա ծնողները:

Վոլտան ծնվել է 1745-ի փետրվարի 18-ին Կոմոյում գտնվող իր նախնիների կալվածքում: Նրա հայրը՝ Ֆիլիպո Վոլտան անգործունյա մի թեթևսոլիկ ազնվական էր: Մայրը՝ դքսուհի Մագդալենա Ինզաին ծնեց յոթ երեխա: Նրանք բոլորն էլ խելահաս և ուշիմ երեխաներ էին: Միայն Ալեսանդրոն էր, որ տառապում էր թե՛ ֆիզիկական և թե՛ մտավոր թուլությամբ: Նա մինչև չորս տարեկան չարտաբերեց և ոչ մի բառ: Երկար ժամանակ կարծում էին, թե նա համր է: Առաջին բառը, որ դուրս եկավ նրա բերանից, դա «ոչ»-ն էր:

Մարդիկ «ոչ» ասել կամ ուշ են սովորում և կամ ընդհանրապես «ոչ» ասել չեն կարողանում, իսկ Վոլտան սկսեց «ոչ»-ից: Իհարկե, սա նրա ծնողների համար ոչինչ չէր նշանակում: Ոչինչ չէր նշանակի նաև նրա հետնորդների համար, եթե նրա գիտական կենսագրությունը նույնպես չսկսվեր նույն այդ բառով. «Ոչ, էլեկտրական ձկներից բացի, էլեկտրական հատկություններով օժտված չէ և ոչ մի կենդանի»...

«Արատավոր» Վոլտայի ֆիզիկական աճը հանկարծ արագացավ, մտավոր կարողությունները ծաղկեցին: Տասնութամյա Վոլտան արդեն ֆիզիկոս էր, ճիշտ այն ֆիզիկոսների նման, որոնք Նոլլում Ֆրանսիայի թագավորին ցույց տվեցին լեյդենյան շշի առեղծվածը:

Երեսուն տարեկան հասակում նա արդեն նշանավոր ֆիզիկոս էր. ստեղծել էր էլեկտրաֆոր մեքենան և լրացրել հիմնականում Ֆրանկլինի անվան հետ կապվող մի այնպիսի բնագավառի բացը, ինչպիսին էլեկտրաստատիկան էր:

Նրա մեքենայի աշխատանքի սկզբունքը նույնն էր, ինչ ժամանակակից դպրոցական էլեկտրաֆորինը: Այդ մեքենան մեծ համարում ունեցավ. Վոլտան ճանաչվեց որպես ֆիզիկոս: Բայց դա, ինչպես ասացինք, հարստացրեց էլեկտրաստատիկայի բնագավառը, մինչդեռ Վոլտային էր սպասում այնպիսի մի գիտության հիմնադրում, ինչպիսին ժամանակակից էլեկտրադինամիկան է: Այո՛, Վոլտան դարձավ էլեկտրադինամիկայի հիմնադիրը. մարդկությանը տվեց հաստատուն հոսանքի գաղափարը, իր փորձով հաստատելով վերջինիս գոյությունը: Այդ են վկայում հաստատուն հոսանքի նրա ստեղծած աղբյուրները (որոնց մասին արդեն խոսեցինք):

Իր երջանիկ ծերությունն անցկացրեց հարազատ Կոմոյում: 1823-ի հուլիսի 28-ին յոթանասունութ տարեկան հասակում գամվեց անկողնին և 1827-ին՝ ութսուներկու տարեկան հասակում վախճանվեց:

Նրա շիրիմն ամփոփվեց իրենց ավանդական գերեզմանոցում: Մի քանի տարի անց նրա գերեզմանի վրա կառուցվեց դղյակատիպ մի շինություն, որի վրա վեր են խոյացել նրա արձանն ու մի շարք այլաբանական քանդակներ: Համալիրի հեղինակը հայտնի քանդակագործ Կոմոլինն է:

1875-ին Վոլտայի ժառանգների համաձայնությամբ մարդաբաններ Կեսար Լոմբրոզոն և Պաոլո Մանթեգացան կատարեցին Պավիայի համալսարանի խնդրանքը. բաց արեցին Վոլտայի դամբարանը և վերցրին նրա գանգի չափերը:

Արարողությանը ներկա էին Իտալիայի բոլոր համալսարանների ներկայացուցիչները: Վոլտայի գանգը մեծ էր, այն հիշեցնում էր հին հռոմեացու գանգ, որպիսիք գտնում էին հնէաբանները: Ուղեղի ծավալը զգալիորեն մեծ էր միջին ուղեղի ծավալից: Գանգի կառուցվածքային որոշ առանձնահատկությունների համաձայն մարդաբանները եզրակացրին, որ Վոլտան եղել է ընչաքաղց անձնավորություն...

Այդ եզրակացությունը ծիծաղելի էր, քանի որ Վոլտան եղել է շիտակ, ազնիվ, անաչառ և ամենակարևորը՝ հետամուտ չի եղել շահի:

Հայտնի է, որ նա եղել է միրեկի հայր և ամուսին, ինչպես նաև նվիրված որդի: Նա ամուսնացել է երեսունինը տարեկան հասակում և ունեցել երեք որդի:

Նրա անձնական իրերից ոչինչ չի պահպանվել, բոլորն էլ այրվել են այն հրդեհի ժամանակ, որն առաջացավ 1900-ին Վոլտայի նշանավոր հայտնագործության 100-ամյա հոբելյանին նվիրված տոնակատարության ընթացքում: Այդ տոնախմբությունը տեղի ունեցավ նրա ծննդավայրում՝ Կոմո քաղաքում: Հոբելյանի կազմակերպիչները Վոլտայի իրերն ու պատրաստած գործիքները ցուցադրում էին էլեկտրական հրավառության ներքո: Անսպասելի բռնկված հրդեհից ազատվեց միայն Նապոլեոնի նվիրած սուրը: Բարեբախտաբար ցուցահանդես չէին տեղափոխել Վոլտայի կատարած փորձերի պատկերները: Հրաշքով փրկված այդ նմուշները մեզ լիովին կարող են համոզել, թե ինչ փորձեր է կատարել մեծ գիտնականը և ինչպես է կատարել:

Փույթ չէ, որ չի պահպանվել Վոլտայի գործածած իրերից ու գործիքներից և՛ ոչ մեկը, կարևորն այն է, որ մարդիկ ամեն օր և ամենուր տպիս են նրա անունը, վոլտ, հարյուր քսանոց վոլտ, հազար կիլովոլտ, միլիարդ էլեկտրոն-վոլտ: Ո՞վ չի արտաբերում նման արտահայտություններ. բանվորը, գյուղացին, բժիշկը, ուսուցիչը, ինժեները, բոլորը, բոլորը:

---



## ՍԵՎԱՆԻ ԾՆՈՒՆԴԸ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Երկինքը շեկ էր,
Երկիրը շեկ էր,
Դաժան արևը աշխարհին թեքվել,
Թվում էր արդեն փրկություն չկա:

Սակայն շիկացած լռության միջից,
Եվ օրհասական դրության միջից,
Լեռներից հանկարծ ավազը ճչաց...

Լեռը վազեց հասավ լեռան,
Լեռը գնաց դիպավ լեռան,
Լեռը լեռան հարցում արեց.
— Այս ո՞վ գոռաց, ի՞նչ պատահեց...

Պատասխանող չեղավ սակայն,
Եվ լեռները մեկեն տեսան
Ավազ լեռան տոչոր լանջին
Թփրտում է ջահել մի լիճ...

Եվ սուրհանդակ կապույտ քամին,
Բերնին զով շունչը Սևանի,
Թռավ գնաց ավետելու
Փրկությունը լեռնաստանի:

Նկ. ԴԱՅԱՆԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

## ԱՆԸՆԴԳՐԿԵԼԻ Է ԻՐԵՐԻ ԱՇԽԱՐՀԸ

Խոնարհ, հլու, լուռ ծառաներ են մեր իրերը՝ ձեռքիս գրիչը, թուղթը, սեղանս, սեղանի վրայի օրացույցը, գրամեքենան... Վերջ չունի անհրաժեշտ իրերի ցուցակը, մինչև ինքնաթիռն ու վեհաշուք երգեհոնը, հին ժամանակներից մեզ հասած քանդակներն ու պճնասեր կանանց արդուզարդերը: Այս բոլորի ստեղծումը պահանջել է մտքի լարում թե՛ գիտնականից, թե՛ արվեստագետից, թե՛ արհեստավորից: Պահանջել է հումք, անտառում անհոգ աճող ծառ է կտրվել կամ երկրի ընդերքում դարեր թաքնված մետաղ ու ածուխ, աղամանդ է հանվել լույս աշխարհ: Իսկ ամենակարևորը՝ պահանջվել է վարպետ ձեռքերի աշխատանք ու հոգնությունից ճակատին շարվող քրտինքի կաթիլներ: Դուք երևի կասեք, որ հիմա այլևս քրտինք չի թափվում, ամեն ինչ մեքենաներն են անում: Բայց չէ՞ որ մեքենան էլ մարդն է ստեղծում և մեքենա ստեղծող մեքենան էլ իր է: Յուրաքանչյուր իր ունի իր գինը: Այսինքն իրը ստեղծելու, ինչպես և ունենալու վրա միջոցներ են ծախսվում: Մի տուփ լուցկին արժե մի կոպեկ... հապա որքա՞ն արժե ինքնաթիռը: Անկեղծ ասած, չգիտեմ: Փող է վճարվում կատարված աշխատանքի դիմաց: Ուրեմն կարելի է հաշվել և այսպես. իմ երեխայի համար գնած պայուսակի (կոշկի, գրիչի, սպորտային համազգեստի, կոնֆետի, մագնիտոֆոնի) համար ես աշխատել եմ երեք ժամ կամ երկուս ու կես ամիս: Իսկ աշխատանք համակցությունը, որին դուք դեռ կողմնակիորեն եք ծանոթ, մտքի ու նյութերի քարու պահանջող, նաև մեծ գոհունակու-

# ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ԲԱՄ-ԻՆ

**3144** կիլոմետր չորրորված տայգա, գրեթե սառցակալած հող, ճահիճներ ու լճեր: Ահա այսպիսին է դարի կառույցի՝ Բայկալ-Ամուրյան մայրուղու անցնելիք ճանապարհը: Մի ճանապարհ, որի իրականացմանը մասնակցում են ոչ միայն կառույց մեկնած մարդիկ, այլև մեր անծայրածիր հայրենիքի գիտնականներն ու մասնագետները, բանվորներն ու ծառայողները, ուսանողներն ու դպրոցականները:

Իսկ հանրապետություններում, մարզերում ու երկրամասերում կազմակերպել են ԲԱՄ-ին շեֆական օգնություն ցույց տվող շտաբներ:

Մեր հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության կից նույնպես ստեղծվել է «Հայկառույց ԲԱՄ» շտաբը, որը ամիսներ շարունակ ավտոմեքենաներ, կոմպրեսորներ, դիզելային էլեկտրակայաններ, մետաղամշակման հաստոցներ, հավաքովի տնակներ, խողովակներ, տուֆ քար, արտահագուստ և այլ նյութեր է տեղափոխում երկաթուղային կայարան: Անցյալ տարվա ընթացքում երեք ապրանքատար գնացքներ են դուրս եկել Երևանից և ուղղություն վերցրել դեպի Արևելյան Սիբիրի Լենա կայարանը: Իսկ ավելի խոշոր մեքենասարքավորումներ, էքսկավատորներ, բուլդոզերներ, որոնք մեզ մոտ չեն արտադրվում, նախօրոք գնվել էին Սվերդլովսկի ու սիբիրյան այլ գործարաններից և Լենա կայարանում միացել Հայաստանից ուղարկված մեքենասարքավորումներին:

Սկզբում գարնանային ձնհալն ու գետերի սառցահոսքը հնարավորություն չտվին այդ ամենը «երկրային» ճանապարհով հասցնել Տայուրա ավան: Օգնության եկան ուղղաթիռները, իսկ ամռան ամիսներին ուղարկված մեքենասարքավորումները տեղափոխվեցին սովորական ճանապարհով:

Մեքենասարքավորումներից զատ, Տայուրա են մեկնել նաև աշխատանքային ջոկատներ, որոնց կազմում ընդգրկված են որակյալ մասնագետներ,

---

թյան պարգևող և շատ հոգնություններ բերող գործ է: Եվ կյանքից շատ տարիներ խլող: Այդ իսկ պատճառով լուցկին թանկ արժե: Որպեսզի իրը հին-հնապանի ծառայի մեջ, պետք է մեր և իրի միջև հատուկ փոխադարձ հարգանք: Սա կիրթ քննչու պայման է նաև: Կրթված մարդը իրեն երբեք թույլ չի տա դանակով խզբզել գրասեղանը կամ սեղանը, ավտոբուսում պոկոտել նստարանների ռետինը, յուղաներկով գրել «Ֆանտոմաս» և «Արարատ» կախարդական բառերը շենքերի պատերին: Ժամանակին հասարակական վայրերում փակցված էին կոչեր. «Չջարդել», «Չկեղտոտել», «Ծաղիկների վրայով չքայլել», մինչև իսկ «Չթքել»: Լավ է, որ կամաց-կամաց ազատվում ենք նման կոպիտ նախազգուշացումներից: Պատերի կոչերը վերացել են, բայց դեռ չեն փրկվել իրերը մահացու վթարներից:

Միշտ չէ, որ իրը մեր ծառան է. երբեմն դերերը փոխվում են. իրերը դառնում են տիրակալ և կլանում են մարդու ամբողջ ուշքն ու միտքը: Այս կամ այն առարկան ձեռք բերելը դառնում է անկուսալ երազանք, խոսակցության միակ նյութը: Եվ աշխարհը նեղանում, փոքրանում է: Գրապահարանը, մեկ էլ տեսար, դարձավ տեսարժան վայր, իսկ միակ ընթերցողը՝ փոշեծծիչը: Տունը իր չորս պատերով, պատերի «որմնանկարներով» դառնում է «թանգարան-բնակարան»: Խոսքը արվեստի գործերի մասին չէ: Հայտնի է, որ հին Հունաստանում մայրանալու պատրաստվող կնոջը շրջապատում էին գեղեցիկ իրերով, քանդակներով: Նրանք խորապես հավատում էին գեղեցիկի կախարդական ուժին, որի ներգործությամբ պետք է գեղեցկանար մանուկը դեռ չծնված:

Իրը նաև պատմություն է: Վիլնյուսից ոչ հեռու գտնվող Ռումշիշկես գյուղի արվարձանում, անտառի մեջ բացված է մի շատ հետաքրքիր թանգարան: Լիտվայի բոլոր գյուղերից այստեղ են հավաքված 17-19-րդ դարերում կառուցված գյուղական տներ՝ գոմերով, հացատներով, սունկ չորացնելու հարմարանքներով, կահ-կարասիով: Տան չորս կողմը ցանկապատված է, լուսամուտների տակ ծաղիկներ են աճում և երբ ներս ես մտնում, թվում է, թե ուր որ է կըհանդիպես տանտիրոջը, իսկ տանտիրուհին ներս կհրավիրի ճանապարհից հոգնած հյուրին: Զարմանալի սիրով, խնամքով ու գործիմացությամբ են վերականգնված այդ տները: Քանի-քանի սերունդների ծնունդ ու մահեր են տեսել իրենց փայտաշեն պատերի մեջ սուրբ-սրբոց տոհմի պատմությունը պահած, հանգած օջախներով ու մարդու կարոտ այդ գողտրիկ տները: Պատրանքը շարունակվում է. անկյունում անխնամ գցած ալեր, կարծես դեռ ճռճվող օրորոց, տանտիրոջ սարքած պահարանում տանտիրուհու կարած կիսամաշ շորեր ու դռան շեմին թողած մաշիկներ, որ դեռ կարծես սպասում են... Իսկ սևացած շրջանակով երիզված լուսանկարից կողք-կողքի շարված ընտանիքի անդամները՝ մեծից-փոքր լուռ ու տխուր հայացքները քեզ հառած պատմում են անհետացած օրերի անցուդարձերից: Իրերը խոսում են քեզ հետ:

Ծառա են, տիրակալ են, պատմություն ու հուշ են իրերը:

Անընդգրկելի է իրերի աշխարհը:

*ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ*

փականագործներ, հյուսներ, վարորդներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, բժիշկներ... Այսինքն նրանք, ովքեր պետք է սկսեն Տայուրա ավանի, օժանդակ շինությունների և, որ ամենակարևորն է, երկաթուղային կայարանի հողային աշխատանքները, նաև լայն ճակատ ստեղծեն հաջորդ ամիսներին մեկնող շինարարական մյուս ջոկատների համար, որոնց ընդհանուր թիվը այս տարի կհասնի յոթ հազարի:

Ընդամենը յոթ ամիս է անցել աշխատանքային անդրանիկ դեսանտի մեկնելու օրից, և հայ շինարարներն արդեն մեծ ու փոքր տներ են կառուցել ավանում, ձևավորել առաջին փողոցը և այն կոչել մեծանուն բանաստեղծ Պարույր Սևակի անունով:

Այժմ տայգայում խորը ձմեռ է: Աշխատանքները գնալով ծանրանում են: Սակայն մայրուղու շինարարները եղանակի քմահաճույքներին ենթարկվել չեն կարող, աշխատանքները պետք է ընթանան սովորական հունով, որպեսզի կարողանան կատարել իրենց խոստումը: Իսկ նրանց խոստումը կարևոր է ու պարտավորեցնող: Ի պատիվ կուսակցության մեծ համաժողովի նրանք խոստացել են տարեսկզբին Տայուրա ավան հասցնել երկաթգիծը, հասկանալի է՝ նաև առաջին գնացքը:

Այո, դա իսկական աշխատանքային տոն կլինի մայրուղին կառուցող բոլոր շինարարների համար: Տայգայի միլիոնավոր տարիների լռությունը առաջին անգամ կխախտի գնացքի երկար ու զիլ սուլոցը, իսկ Տայուրայում գնացքին դիմավորողների թվում կլինեն նաև դպրոցականներ: Այո՛, զարմանալու ոչինչ չկա. Տայուրայում նաև հայ պատանիներ կան: Նրանք շինարարություն են մեկնել իրենց ծնողների հետ: Ամռան ամիսներին աշխատում էին շինարարությունում, իսկ դպրոցները բացվելուց հետո դասերի են հաճախում ավանից չորս կիլոմետր հեռավորության վրա գտնվող ԲԱՄ-ի կոմերիտական մայրաքաղաքում՝ Աստղավանում:

Ձեզանից շատերը տայգայում գտնվող դպրոցականների նման կուրախանան այս լուրով: Չէ՞ որ դուք նույնպես, թեև ոչ անմիջականորեն, բայց ձեր ներդրումը ունեք այդ համաժողովրդական կառույցում, և այն արտահայտվում է ձեր հավաքած ու հանձնած մետաղի ջարդոնից ու թղթի թափոնից ստացված գումարով: Իսկ ձեր ուղարկած ծանրոցները ու նամակները ուրախություն են պատճառում շինարարներին, թեթևացնում տայգայի աշխատանքային անսովոր պայմանները:

Ի դեպ, Տայուրայի գլխավոր պլանն ու երկաթուղային կայարանի նախագիծը և բանվորական գծագրերը կազմել է Հայպետնախագիծը:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

## ՄԱՆԿԱԿԱՆ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ԱԿԱԴԵՄԻԱՆ



Մի քանի ամիս է, ինչ գործում է Սպանդարյանի շրջանի № 1 ԲԾԳ-ին կից կիրառական արվեստի ակադեմիան, որն ունի նկարչական, երաժշտական գործիքների (ժողովրդական), գոբելենի, գործվածքների, կարուձևի և այլ խմբակներ:

Գոյության կարճ ժամանակամիջոցում ակադեմիայի սաները արդեն իրենց աշխատանքներով մի քանի ցուցահանդեսներ են բացել: Ուսումնական տարվա սկզբին ՀԼԿԵՄ Սպանդարյանի շրջկոմում բացել էին երրորդ ցուցահանդեսը, ներկայացնելով գոբելեն, գործվածք և ձեռքի այլ աշխատանքներ:

Այցելուները մեծ հետաքրքրությամբ դիտեցին «Աղջիկն ու ծառը», «Բնապատկեր» ասեղնագործ ու գոբելեն այլ աշխատանքներ:

## ՊԱՐԳԵՎԱՏՐՎԵՑԻՆ ՊԱՏՎՈԳՐՈՎ

Նոր ուսումնական տարվա սկզբին Թալինի շրջանի Ագարակ գյուղի դպրոցի հասցեով ուրախալի հեռագիր ստացվեց: Դպրոցի պատանի սելեկցիոներները պարգևատրվել են համամիութենական «Պատանի տիմիրյազևական» ցուցահանդեսի պատվոգրով:

## ՊԱՏԱՆԻ ՍԱՀՄԱՆԱՊԱՀՆԵՐԸ

Սահմանապահների պատանի բարեկամների տասնհինգ ջոկատներ կան Թալինի շրջանում, և բոլորն էլ մեծ օգնություն են ցույց տալիս սահմանապահներին: Այդ ջոկատները ամեն տարի մասնակցում են շրջանային ու հանրապետական մրցումների: Հատկապես աչքի են ընկնում Արագած ավանի և Գետափ գյուղի ջոկատները: Անցյալ տարի Արագածի ջոկատը հանրապետական մրցումներում առաջին տեղը գրավեց և պարգևատրվեց ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով: Այդ ջոկատի անդամ Տիգրան Քեշիշյանը այժմ սովորում է զինվորական ուսումնարանի սահմանապահների բաժնում:




## ՃՆՎՏԵՆՔ ՊԱՅԹՅՈՒՆ

Պայթյունները բավականին արագացնում են հողային աշխատանքների կատարումը: Որպեսզի չվնասվեն մոտակայքում գտնվող շենքերը, շվեդացի գիտնականները առաջարկում են սառեցնել գետինը: Այն տեղամասը, որտեղ պայթյուն է կատարվելու, ծածկում են -196°C հեղուկ ազոտով: Գետինը այնքան է կարծրանում, որ ոչ մի ցնցում չի կարող վնասել շենքերը: Մի քանի ժամ անց ազոտը ցնդում է՝ գետնի վրա չթողնելով ոչ մի հետք:



## ՀԻՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ՏԱՐԻ ՀԵՏՈ

Ցուրտ ձմեռ Միջերկրածովյան ծովի ափերին, մեղմ եղանակ Գրենլանդիայում և հաճախակի թայֆուններ Խաղաղ օվկիանոսում. Չիկագոյի համալսարանի մի խումբ գիտնականների կարծիքով, այսպես կլինի... 50 միլիոն տարի հետո: Իրենց «կանխատեսումը» կանխատեսման անենք գիտնականները ելնելով են ամենում աշխարհամասային դրեյֆը, որը պետք է Երկրի կլիմայի այդքան անսովոր փոփոխություններ առաջացնի: Ատլանտյան օվկիանոսի ավազանն անընդհատ մեծանում է, իսկ դրա հետևանքն այն կլինի, որ Գոլֆստրիմի տաք հոսանքի ավելի մեծ մասը կհասնի հյուսիս և մերձ ի վերջո կխափանի Արկտիկայի սառցե գլխարկը և կմեղմացնի աշխարհի այդ խիստ վայրի կլիման: Աֆրիկայի հյուսիսային ուղղությամբ շարժվելը փոփոխության կենթարկի Ջիբրալթարը և կազդի Միջերկրական ծովի միկրոկլիմայի վրա:

Ավստրալիան էլ շարժվում է

## ԵՐԲ ՕՃԱՌ ՉԿԱՐ

Երբ մարդը հանեց գազանի մորթին և շորեր հագավ, սկսեց մտածել լվացվելու և լվանալու մասին: Դժվար է ասել, թե երբ և որտեղ են առաջին անգամ լվացք արել, բայց ժամանակի արվեստի գործերը վկայում են, որ հին Եգիպտոսում և հին Հունաստանում արդեն լվացքը սովորական աշխատանք էր համարվում: Հին որմնանկարներից երևում է, որ փարավոնները ու նրանց պալատականները մաքուր են հագնվել: Պատկերված են նաև լվացարարուհիներ. նրանք սպիտակեղենը դրած հսկայական քարի վրա՝ տրորում են և ուժեղ թակում: Հոմերոսը իր «Ոդիսականում» պատմում է, թե ինչպես էին հին հույները լվացք անում. նրանք կավահող գետինը մի քիչ փորում էին, մեջը լցնում ջուր: Կանայք սայլերով լվացքը բերում էին և լցնում փոսի մեջ ու ոտքերով տրորում: Այնուհետև սպիտակեղենը պարզաջրում էին և փռում ծովափին: Հետագայում այդ փոսորակներին փոխարինեցին տաշտերը: Հետաքրքիր է, որ հին Հունաստանում լվացք անելը ստորացուցիչ աշխատանք չի համարվել: Հաճախ լվացք էին անում ոչ միայն ծառաները, այլև արքայադուստրերը: Հոմերոսը պատմում է, թե ինչպես մի անգամ Ոդիսևսը ծովափին հանդիպում է Ալկինոս թագավորի աղջկան, որն իր ընկերուհիների հետ լվացք էր անում: Ոդիսևսը բոլորովին չի զարմանում, իսկ թագավորի աղջիկն էլ չի շփոթվում, վատ չի զգում, որ իրեն լվացք անելիս տեսան:

Առաջին անգամ օճառն ստեղծել են կելտերը, որոնք ապրել են Գալիայում (այժմ Ֆրանսիա): Լվացքի և լվացվելու մասին մեզ տեղեկություններ է տալիս հռոմեական նշանավոր գրող-պատմաբան Պլինիոս Ավագը: Նա գրում է, որ հին ժամանակներում օճառի համար հումք են հանդիսացել այծի յուղն ու փայտի թեփը: Դեռևս նախնադարյան մարդը նկատել է, որ երբ յուղոտ միս են տապա-

հրամանագրին ուղղությունը: Գաղութում անձեղող չոր կլիման այդ ժամանակ կոմբել խոնավ, ...յա ...: Քանի որ Ավստրալիայում կգտնեք այն տեղը, որտեղ ծնվում են թափառաշրջիկները, որոնց ... Վերջապես, ենթադրում են գիտնականները, Սովետական Միու-



թյան արևելյան մասը կփոխանա Հյուսիսային Ամերիկայի հետ Ալեուտյան կղզիների մոտ, այնտեղ, որտեղ եղել է աշխարհի ... անցյալում:

## ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՀԵՂԻՆԱԿԸ

1811 թվին ֆրանսիացի զինվորական, քիմիկոս Բեռնար Կուրտուան աշխատում էր լաբորատորիայում: Սեղանի վրա երկու անոթ կար, մեկում ծծմբաթթու էր, մյուսում՝ ծովային բույսերի մոխրի ջրային թուրմը: Գիտնականի ուսին նստել էր նրա սիրելի կատուն: Հանկարծ կատուն սեղանին ցատկեց և ջարդեց անոթները: Հեղուկները իրար խառնվեցին և անմիջապես բարձրացավ կապտա-մանուշակագույն գոլորշու ամպը: Այդպես հայտնագործվեց քիմիական նոր էլեմենտը՝ յոդը: Հետագայում Կուրտուան այդ հայտնագործության համար ակադեմիայից 6000 ֆրանկ պարգև ստացավ: Թե նա ինչպես երախտագիտություն հայտնեց կատվին, հայտնի չէ:



## ՆՈՐ ՀԵՌԱԽՈՍ

Երբ ձեզ ավտոմատ հեռախոսով զանգում են, չեք կարող իմանալ, թե որտեղից են խոսում: Այս հանգամանքից, ավա՜ղ, օգտվում են հեռախոսային խուլիգանները: Վերջերս պատրաստվել է նոր հեռախոս, որը հնարավորություն է տալիս անմիջապես իմանալու խոսողի գտնվելու վայրը: Բաժանորդի համարը և ձեզ միացնող հեռախոսակայանի համարը վառվում են լուսատախտակի վրա և այդպես մնում մինչև խոսակցության ավարտը: Ի միջի այլոց, նշվում են բոլոր հեռախոսները, ինչպես մասնավոր, այնպես էլ ավտոմատները:



կում, ճաշված յուղը վեր է ածվում ճրաշեկ մոխրի, որը լվացքի և լվացվելու համար շատ հարմար միջոց է: Հետագայում հանդես եկան արհեստավորներ, որոնք օճառ էին պատրաստում: Բայց գնորդները քիչ էին, որովհետև հատուկ հրամանով պետությունը արգելում էր օգտագործել կենդանական ճարպերից պատրաստած արտասովոր փրփրող իրերը: Այն ժամանակ բարձր ազնվական շրջաններում՝ աղտոտությունը ծածկելու համար օգտագործում էին զանազան բուրգեր և օծանելիքներ: Օճառի արտադրությունը սկսվել է 9-րդ դարում՝ ֆրանսիական Մարսել քաղաքում:

Վեցերորդ դարում լվացքը այլևս ոտքով չէին տրորում, փայտով ծեծում էին, օճառում և ապա խոզանակում: Լվացող տախտակն ու տոփանը երևան եկան միայն 16-րդ դարում: Եթե չլինեին տոփանները, ապա ֆրանսիական Նիցցա քաղաքի բնակիչների ճակատագիրը, որոնք 1543 թվականին պաշարվել էին թուրքերի կողմից, այլ կլիներ: Երբ գրոհն սկսվեց, Կատերինա Սեգուրան անունով մի լվացարարուհի՝ տոփանը ձեռքին, ճեղքվեց կովի մեջ, սպանեց թուրք դրոշակակրին և խլեց դրոշը: Թուրքերի շարքերում խառնաշփոթություն ընկավ և Նիցցայի ոգևորված պաշտպանները թշնամուն դուրս նետեցին քաղաքից:

16-րդ դարում լվացքը նոր ձևով էին անում: Սպիտակեղենը դնում էին տակառի մեջ, վրան լցնում էին մոխիր և տաք ջուր: Մոխրի մեջ պարունակվող քիմիական նյութերը մաքրում էին շորերը:

Անհիշելի ժամանակներից մարդիկ սպիտակեղենը չորացնում են արևի տակ: Այդ սովորությունը պահպանվել է մինչև մեր օրերը: Իսկ ինչպե՞ս էին արդուկում: Հին Հռոմում տաքացնում էին մեծ, հարթ քարեր: Արդուկը ստեղծվել է ավելի ուշ:

Օճառի օգտագործումը հետագայում դարձավ առանձին պետությունների կուլտուրական կենսամակարդակի ցուցանիշ: Ամենաշատ օճառն այժմ օգտագործվում է ՍՍՀՄ-ում՝ մեկ տարում մոտավորապես 170 հազար տոննա:

*«ՊԼԱՄԻՉԵ» ամսագրից, Բուլղարիա*

# Անձրևոտ ծառեր



ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Անտառ շոգ օրերին հանգստանալով թեղու կամ լորենու ստվերում, դուք անշուշտ նկատել եք, թե ինչպես երբեմն ծառերի սաղարթից մանր, ուղղակի փոշիանման «անձրև է տեղում»: Այդ «անձրևը» հաճելի է, շաքարահամ, քաղցրահամ, սակայն խորհուրդ չենք տալիս համտես անել... քանի որ լվիճների արտաթորանք է: Եթե դուք ուշադրությամբ զննեք ծառի սաղարթը, կնկատեք հազարավոր մանր, կանաչավուն միջատներ, որոնք սողալով ծառի տերևների, ճյուղերի, բնի վրայով, մեծ քանակությամբ շաքարահյութ են արտաթորում: Դրանից ծառի տերևները փայլուն են դառնում և թվում է, թե հենց նոր անձրև է տեղացել սաղարթի վրա: Իսկույն ձեր գլխում հրաշալի միտք է հղանում. ա՜յ թե այնպիսի ծառեր լինեին, որ ցանկացած պահին անձրև տեղային և ջրեին պարտեզում աճող ծառերն ու ծաղիկները:

Այդպիսի հրաշքի մասին այգեգործները երազել անգամ չեն կարող: Սակայն պարզվում է, որ այդպիսի ծառեր, իրոք, գոյություն ունեն: Դեռ վաղուց, բուսաբանական գրականությունից հայտնի է, որ կան ծառեր, որոնց սաղարթի տակ պարզ, արևոտ եղանակին կարելի է փառավորապես թրջվել: Սակայն դրա պատճառը ոչ թե ծառերի սաղարթից թափվող անձրևի կաթիլներն են, այլ նույնպես հազարավոր մանր միջատները, որոնք այս անգամ ոչ թե շաքար, այլ մաքուր ջուր են արտաթորում: Սակայն միայն այս դեպքի մասին չէ, որ ցանկանում ենք պատմել ձեզ:

Դպրոցական դասագրքերից ձեզ անշուշտ հայտնի է, որ բույսերը երբեմն «լալիս են»: Նրանց տերևների վրա հայտնվում են ջրի կաթիլներ, որոնք դանդաղորեն մեծանալով, ցած են կաթում և թրջում հողը: Դա ջրի ավելորդ քանակությունն է, որ հեռանում է բույսից: Այդ երևույթը կոչվում է «գուտացիա»: Կան ծառեր, որոնց արտասվելու այս անսովոր երևույթը բավականին ուժեղ է արտահայտված և կարելի է ասել, որ ծառը ուղղակի անձրևում է:

Անգլիացի բուսաբան Հատչինսոնը, որը ուսումնասիրել է Կանարյան կղզիների բուսականությունը, պատմում է, որ դեռևս երկու հազար տարի սրանից առաջ, հին հռոմեացիներին ծանոթ է եղել Կանարյան անձրևածառը: Դա պատկանում է դափնազգիների ընտանիքին: Աճում է լեռնային կիրճերում: Չնայած այդ վայրերում կլիման չոր է և շոգ, այնուամենայնիվ բույսերը գիշերվա ընթացքում կարողանում են այնքան մթնոլորտային խոնավություն կուտակել իրենց սաղարթների մեջ, որ կարող են ուղղակի ոռոգել շրջակայքը: Ինչպես պնդում է Հատչինսոնը, այդ ծառերի տակ քարե ջրհորներ էին պատրաստում ջուր կուտակելու համար: Իսպանացիները այդ ծառը անվանում էին Էլ Գարոե: 17-րդ դարի սկզբում անձրևածառը այնպիսի մասսայականություն էր վայելում, որ այն ժամանակվա բուսաբանական գրականության համար դրանց պատկերները որպես ճակատազարդ էին ծառայում:

Դժբախտաբար Հատչինսոնի նկարագրության մեջ գերակշռում է ֆանտազիան: Ճշմարտությունն այն է, որ, իրոք, Կանարյան կղզիներում աճում են մշտադալար, խոնավ անտառներ, չնայած տեղումների քանակությունը անբավարար է նման անտառների գոյության համար: Բանն այն է, որ այստեղ, լեռներում միշտ էլ ամպամած ու մառախլապատ է: Ջրի կաթիլները խտանալով մշտադալար ծառերի հարթ, սառը տերևների վրա, առատորեն օգտագործվում են բույսերի կողմից և նպաստում նման տիպի անտառների պահպանմանը: Այդ խոնավության մի մասը տերևներից հոսում է ցած և խոնավությամբ ապահովում նաև անտառի մնացած բուսականությունը: Այսպիսի անտառներ հատկապես շատ են տարածված Տեներիֆում և կոչվում են «Լաս Մերսեդես»:

Նման անտառներ են եղել նաև Հյուսիսային Ամերիկայի Վաշինգտոն և Օրեգոն նահանգներում: Սակայն երբ մարդիկ անգիտակցաբար ոչնչացրին խոնավություն կուտակող «անձրևաբեր» ծառերը, անտառը ամբողջովին ոչնչացավ խոնավության պակասից և երբեմնի անտառապատ տեղանքը վերածվեց անապատի:

Բուսաբաններ Պալմերը և Դիտմերը գրում են, որ թաց և խոնավ շրջաններում ծառերի տերևները հաճախ ուղղակի անձրևում են: Դա տեղի է ունենում այն ժամանակ, երբ ծառի արմատները մեծ քանակությամբ խոնավություն են ծծում, իսկ տերևները ի վիճակի չեն լինում գոլորշիացնել սովորական եղանակով: Ավելցուկ ջուրը ելք է փնտրում և սովորաբար հեռանում է տերևների եզրերին տեղադրված հատուկ անցքերի՝ հիդատոդների միջոցով: Սակայն չոր շրջաններում այսպիսի երևույթ երբեք չի նկատվում: Իսկ բուսաբան Դոլգին, ընդհակառակը, գրում է, որ կաթնուկազգիների ընտանիքի ներկայացուցիչ բրիդելիան ամբողջ չորային սեզոնի ընթացքում անընդհատ «անձրև է մաղում»:

Մոյոբամբայի ամերիկյան հյուպատոսը վկայում է, որ այն ժամանակ, երբ Պերուում երաշտից չորանում է ամեն ինչ և ցամաքում են անգամ գետերը, անձրև-





վածառի տակ խմբակային ճահիճ է առաջանում, քանի որ դրանք ի վիճակի են խտացնելու օդի ամենաչնչին խոնավությունն անգամ: Նա խորհուրդ է տալիս այդ ծառերը մշակել ամենաչորային շրջաններում, որտեղ դրանք մեծ օգուտ կտան երկրագործությանը:

Մելֆորդի էքսպեդիցիայի անդամները 1921 թվականին Բոլիվիայում հանդիպեցին պարմանալի անձրևածառերի: Բոլորովին պարզ եղանակին, երբ շիկացած արևը հառել էր զենիթին և երկար ժամանակ տեղումներ չլինելու պատճառով չորացել էր ամբողջ բուսականությունը, ինչ-որ ծառերից առատ անձրև էր տեղում: Այն թափվում էր անընդհատ և կաթիլների թափքը առատային ուժեղ անձրևի տպավորություն էր թողնում: Ծառի տակ մի քանի րոպե կանգնողները թրջվում էին մինչև ոսկորները: Անհնար էր բարձրանալ ծառի վրա այդ հոսքի պատճառը պարզելու համար, և բուսաբանները ստիպված կտրեցին դրանցից մեկը: Անմիջապես պարզ դարձավ, որ ծառի վրա եղած խոռոչ, մինչև 30 սանտիմետրանոց ինչ-որ բներում տեղավորված էին անթիվ-անհամար թրթուրներ: Բները [illegible] լցված էին ջրով, որը հոսում էր ծառի կեղևից այն տեղերում, որտեղ ամրացված էին բները: Հենց այստեղից էլ ջուրը խոշոր կաթիլներով ցած էր հոսում: Հետագայում պարզվեց, որ դա լոնխոկարպուս կոչվող ծառատեսակն էր:

Կանարյան հուպայածառը իր հայրենիքում հայտնի է որպես «անձրևածառ»: Այդ բանը առաջին անգամ նկատել է Վերներ անունով մի աշխարհագրագետ Տեխասի նահանգում: Հուպայածառի այդ հատկությունը Վերները խոկույս օգտագործեց առատ շոգ օրերին ծառի տակ ընտանիքը հանգիստ [illegible] համար: Եվ իրոք, այդ ծառը նույնիսկ անամպ օրերին մեծ քանակությամբ խոնավություն էր արտադրում, որը զգալիորեն խոնավացնում էր շրջակայքը: Վերների արտահայտությամբ՝ «շոգ օրերին ծառը անընդհատ արտասվում էր»:

Կանարյան հուպայածառ է աճում նաև Երևանի բուսաբանական այգում: Սակայն մենք այդպիսի երևույթներ չենք նկատել: Համանման սովորույթներ չենք տեսել նաև մեր երկրի մյուս բուսաբանական այգիներից:

«Անձրևող» բույսերը մեծ հետաքրքրություն են ներկայացնում բուսաբանների և հատկապես անտառագետների համար: Խոսքն այստեղ վերաբերվում է այն բույսերին, որոնք «անձրևում են» ինքնուրույն, առանց միջատների օգնության: Երբ դրա պատճառը միջատներն են, ապա երևույթը համարվում է ոչ բնական, հիվանդագին, և անհրաժեշտ է անհապաղ պայքար մղել այն վնասակար միջատների դեմ, որոնք ոչնչացնում են ծառը, շոգ ու չորային եղանակին բույսերից ծծելով և անխնա կերպով դուրս մղելով մեծ քանակությամբ կենսականորեն անհրաժեշտ ու թանկարժեք հեղուկ:




Լույս է տեսնում 1925 թվականից

# ՊԻՈՆԵՐ

փետրվար 1976 թ.

ՀԼԿՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽԱՅՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06274: Պատվեր 2711: Տպաքանակ՝ 75900: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/XII 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806





# Ժ Ա Մ Ա Ն Ց



653—664 թվերը դասավորեք տասներկու շրջանագծերում այնպես, որ վեց եռանկյունիներից յուրաքանչյուրի գագաթներում գրված երեք թվերի գումարը կազմի 1976։

Առաջարկված հարցերին ճիշտ պատասխանելուց հետո, թվեր պարունակող վանդակներում գրելով իրենց համապատասխան տառերը, արտաքին օղակում կկարդաք Նոր տարվան նվիրված մի քառատող, իսկ ներքին օղակներում՝ Նոր տարվա ողջույնը և հայկական տոմարի առաջին ամսվա անունը։

1) 13, 11, 14, 2, 4, 5, 20, 6, 10—Պուշկինի երկերից։

2) 1, 2, 3, 1, 17, 4, 8—երաժշտական գործիք։

3) 19, 1, 19, 4—Սունդուկյանի պիեսներից։

4) 16, 7, 12, 15, 7, 9—սպորտային խաղ։

5) 5, 7, 2, 11, 18, 7, 8—արևմտահայ բանաստեղծ։

*Կազմեց ՍՈՒՐԵՆ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

«ՊԻՈՆԵՐ» № 1

ԳԱՂՏՆԱԳԻՐ

[illegible]

ԽԱՉԲԱՌ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— [illegible]

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— [illegible]